ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

Ձ. 6

# ՈՒՂԵՒՈՐՈՒԹԻՒՆ

# Ի ՓՈՔՐ ԱՍԻԱ

ԳՐԵՑԻՆ

ԱԼՊԷՐ ՏԸՎԸԼԷ ԵՒ Գ. ՓԻՍՈՆ

ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ

ՎԻԷՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1892.

# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

---

Ջ.

## ՈՒՂԵՒՈՐՈՒԹԻՒՆ Ի ՓՈՔՐ ԱՍԻԱ

ԳՐԵՑԻՆ

ԱԼՊԷՐ ՏԸՎԸԼԸ ԵՒ ԳԷՈՐԳ ՓԻՍՈՆ



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1892.

# ՈՒՂԵՒՈՐՈՒԹԻՒՆ

# Ի ՓՈՔՐ ԱՍԻԱ

---

ԳՐԵՑԻՆ

ԱԼՊԷՐ ՏԸՎԸԼԷ ԵՒ ԳԷՈՐԳ ՓԻՍՈ՛Ն

ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1892.

# Ա Զ Դ

Գաղղիոյ Կրթութեան, Վաճառականութեան եւ Երկրագործութեան պաշտօնարանաց կողմանէ ուսումնական ուղեւորութեան մ'առաքուած էին երկու գաղղիացի գիտնականք՝ Գէորգ Փիսոն (Georges Pisson) եւ Ալպեր Տըվըլէ (Albert Develay), որոնք իրենց ուղեւորութեան նպատակ դրած էին կտրել անցնիլ Փոքրն Ասիոյ արեւելեան-հիւսիսային եւ Իրանի ալ արեւմտեան-հիւսիսային կողմերը: Սոյն գիտնականք իրենց ուղեւորութեան միջոցին թղթակցութիւններ կ'առաքէին գաղղիական Le Temps օրագրին, որ զանոնք այժմ ի մի հաւաքելով հրատարակած է իբր Յաւելուած իւր թերթին այսու վերնագրով՝ "Յառաջակողման Ասիոյ մէջ:"[1]

Սոյն ուղեգրութիւնն, որ 24 միածալ մանրագիր սիւնակ կը լեցընէ. ունի ի սկզբան ստուերագրեալ աշխարհացոյց տախտակ մ'այն կողմանց, որուն վրայ նշանակուած է իրենց բռնած ճամբուն ուղղութիւնը: Ուղեգրութիւնս այլեւայլ մասերու բաժնուած է: Առաջինը, որ Փարիզէն մինչեւ Կարին հասնիլը կը ստորագրէ, գրած է Ալպեր Տըվըլէ. երկրորդը՝ որ Կարնոյ ստորագրութիւնն է, Գ. Փիսոնի գրչին արդիւնքն է. երրորդն՝ որ Կարնէն մինչեւ ի Բաղէշ կը հասցընէ, դարձեալ առաջնոյն գրչէն ելած է: Այս մասերէն վերջը որ ամբողջ գրութեան գրեթէ կէսն է, կու գայ ընդար-

[1] En Asie antérieure: Le Temps, **1891**. Supplément—décembre.

ծակ մաս մ՚որ Պարսկաստանի վրայ կը ճառէ, դարձեալ Գ. Փիլոնի գրչէն: Թերթին խմբագրութիւնը կը յայտնէ միանգամայն որ ներկայ ընդարձակ յօդուածն մի մասն է ամբողջական ուղեգրութեան. մնացեալն առ ի չգոյէ տեղւոյ դուրս թողուած է: Այս հատուածին ճշգրիտ թարգմանութիւնն է յաջորդը. թէեւ չըլլանք հեղինակաց ամէն կարծեաց ու տուած տեղեկութեանց համամիտ:

Ուղեգրութեանս հետաքրքրական մասերն հետզհետէ հրատարակեցինք քաղուածոյ թարգմանութեամբ նախ "Հանդէս Ամսօրեայ„ ուսումնաթերթին[1] մէջ, ուր դուրս թողուած էին այնպիսի քանի մը կտորներ, որ զուտ ուսումնական նկարագիր չունէին: Այժմու հրատարակութիւնս դոյզն մասամբ ամբողջական է. միայն գլխոց բաժանմանց եւ գլխոց վերնագրութեանց մէջ աննշանակ փոփոխութիւն ըրած ենք: Դուրս մնացած է գլուխ մը որ Հայոց այժմու վիճակին վրայ կը խօսի: Նաեւ հատուածին վերջին կէսէն՝ որ Պարսից աշխարհին ուղեգրական նկարագրութիւն մըն է, առնուած են միայն այն մասերն, որ մեզի հետաքրքրական են:

---

[1] Տես "Հանդէս Ամս.„ 1892, Թ. 2—6: Գրութիւնս թարգմանութեամբ հրատարակեցին "Արձագանք„ 1892, Թ. 4—11 եւ դարձեալ "Արմէնիա„ 1892, Թ. 44—57. բայց երկուքն ալ՝ մանաւանդ վերջինը՝ շատ տեղ համառօտեալ:



# ՈՒՂԵՒՈՐՈՒԹԻՒՆ

# Ի ՓՈՔՐ ԱՍԻԱ

## Ա.

## ՓԱՐԻԶԷՆ Ի ԿԱՐԻՆ

### ՍԿԻԶԲՆ ՈՒՂԵՒՈՐՈՒԹԵԱՆ

*Տրապիզոն, 27 օգոստոս, 1890:*

*Ըստ աւանդութեան՝ Արեւելից մէջ պէտք ենք փնտռել մեր քաղաքակրթութեան սկզբնաւորութիւնքն, այն սրբազան երկրին մէջ՝ ուր մարդուս առաջին քայլերը յերեւան կու գան։ Խորհրդաւոր զրոյցներու այս երկրին մէջն է որ կ'երեւան դիք. ուր Ոսիրիս եւ Բակքոս իրենց աշխարհակալութիւնքը կը տարածեն. ուր վիշապ մը պահապան կը կենայ Ոսկի Գեղման. ուր Բեղլերոփոն, Հերակլէս եւ Թեսէոս կը կռուին Միտաննեայ կամ Ամազոնաց դէմ. այս անամպ երկնիւք օժտեալ երկրաց մէջ ծնաւ Միհրայ պաշտօնը. հոս Որմիզդ ոգորեցաւ Արհմնի դէմ, բարձրացան Բահաղու, Թամուզի բագինները, եւ պաշտօն առաւ Անահիտ դիցուհի եւ բիւր այլ դիք։ Այս տեղ դարձեալ՝ աշխարհակալաց ամբարտաւանութեամբն արձանագրեալ ժայռերու կամ քանդակեալ գլանոց եւ դրոշմեալ աղիւսներու վրայ, որ բաբելոնական արքայից քաջագործութիւնքը կը պատմեն, նախա-*

պատմական ժամանակի երկարածիգ ընակափոխութեանց, անվերջ գաղթականութեանց եւ հզօր քաղաքակրթութեանց հետքերը կը գտնուին: Նաեւ յետոյ, երբ արդէն ոտք կը կոխենք գրաւոր պատմութեան սահմանն, որուն սեմոց վրայ այնպէս սքանչելի մուտք մը կը կազմեն Հոմերեանց նուագներն ու աւելի կանխագոյն՝ Ծննդոց գիրքը. երբ առասպելախառն վէպք տակաւ առ տակաւ անհետ կը կորսուին, երբ միտքն ու հանճարը կը զարթնու տոկուն աշխատութեամբ բեղմնաւորեալ, եւ երբ մարդկութիւնն օր աւուր աւելի հաւատարմութեամբ կ'արձանագրէ իւր տարեգրութիւնքը. — այս միեւնոյն Ասիան է որ կը դողայ Կիւրոսի բանակաց եւ Աղեքսանդրի լեգէոններուն արշաւանաց, Պարթեւաց եւ Հռովմայեցւոց ընդդէմդարձ բախման, արաբական ցեղերու եւ մոնղոլական վաչկատուն հրոսակաց խուժան ծփանաց ներքեւ. կամ որ դողալով կը խոնարհի Մովսիսի օրինաց, Յիսուսի առակաց եւ Մահմետի հրամանաց առջեւ:

Առասպելախառն վիպաց այս երկիրն, ուր ցեղեր սփռեցան վայրավատին, կրօններ ծնան, ծագեցան զարմանալի վիպասանութիւնք. որ հայրենիքն է ցորենեղէն արմտեաց, մրգաբեր ծառոց, որթատնկոյ եւ անասուն անասնոց. որ խանձարուրքն է քաղաքակրթութեան, քանի որ դեռ չէր նիրհած կրկին՝ դարերու փոշւոյն մէջ՝ վատտակաբեկ. — այս երկրին կանխաւ պէտք էր ապաքէն յայց ելլել գետոց, լերանց ու հովտացն, որ այնչափ դիպաց յուշարար վկայ են կանգնած. քննել պատմական ուղիներն, աւերակաց դերբուկքն ու արձանագրութիւնքը. ուսումնասիրել ազգագրական նկարագիրքն այլեւայլ ցեղերու, որ յետնամնաց բեկորքն են հետախաղաղ կորուսած տիրապետութեանց. միով բանիւ ի լոյս հանել այն ամէնն որ մնացորդ նշխար կը գտնուի ազգաց, հարստութեանց եւ միահեծան իշխանակալութեանց,

որ զիրար փոխանակեցին եւ կարգ ըստ կարգէ խառնակեցին, առաթուր կոխեցին, միջամուխ թափ-անցեցին եւ նուաճեցին ազգեր եւ ցեղեր։ Սակայն այսպէս չէ եղած. եւ ցայսօր աշխարհագէտ խուզար-կուաց եւ գիտնոց աշխատութիւնը շատ մեծ է։ Ընտրելագոյն աշխարհացոյց տախտակաց իսկ վրայ տեսնուած ընդարձակածաւալ դատարկ տեղերը կը ցուցընեն դեռ եւս չհետազօտուած երկիրներ. բազ-մութիւն մ'արձանագրութեանց դեռ կը մնան ա-ռանց առեղծման, նաեւ եւ ոչ իսկ ի լոյս հանուած. անթիւ հողակոյտ բլուրք՝ տակաւին չպեղուած ու չխուզարկուած՝ գաղտնիք կը մնան մեզի. բազմա-թիւ են ժողովուրդներ, որոնց ոչ բարքը գիտենք, ոչ սովորութիւնքն, աւանդութիւնքն ու զրոյց-ները, ինչպէս եւ ոչ իրենց սկզբնաւորութիւնն ու ազգագրական խնամութիւնքը։

Մեր մտադրութիւնը գրաւեց ի մասնաւորի երկիր մ'որ թերեւս ամէնէն քիչ ճանչցուած է, այսինքն՝ Հայաստան ու Քրդաց աշխարհը։ Հայկական՝ քրէական նիւթերով հարուստ բարձրագաւառաց մէջ Խաղտիք եղան կ'ըսուի, որ առաջին անգամ ձուլեցին պղինձն ու կռեցին երկաթը։ Հէքքարի (Մոկաց հարաւակողման) առապար եւ գահավէժ լերանց թոհեւբոհին, այս զարհուրելի գործեան հանգուցին մէջ՝ զոր Աղեքսանդր կտրեց անցաւ շրջան ընելով, Ջուդի եւ Արարատ լերանց մէջ, որոնց թէ մին եւ թէ միւսին Նոյի տապանը կրե-լու պատիւը տրուած է, փախած ապաւինած են լեռնորդեայ եւ կռուասէր Քրդաց քով նաեւ ա-սորեստանեայ ժողովրդոց բեկորքը՝ Նեստորականք, որոնց կրօնական եւ քաղաքային պետն է Մար-Շիմոն, եւ որոնք Քաղդէացի յորջորջանքը կ'առ-նուն՝ երբ կաթուղիկեայ կ'ըլլան։ Աւելի արեւ-մտեան կողմն՝ ի Թուր-Ապտին՝ ուրիշ ազգաց բե-կորք, որ Յակոբիկք կը կոչուին, կը միանան հռով-մէական եկեղեցւոյն հետ՝ Ասորւոց անունն առնլով։

Վանայ լճին եզերքներն էր, ուր արդէն հայկական հնաւանդ լեզուն կը խօսուէր, Նիմրութի եւ Սիփանայ լերանց մօտ, որ թերեւս չէին դեռ մարած, երբ զԱրշէճ հիմնարկելու եկաւ Ադրամելէք, մինչ իւր Սանասար եղբայրը Սասնոյ կողմանքը կ'ապաստանէր, երկուքն ալ մազապուրծ փախած իրենց Սենեքերիմ հօրմէն, որ զիրենք իւր Նեսրաք դից զոհել յօժարելու զառածած էր: Ի Շամիրամակերտ, այսինքն՝ ի Վան կանգնած է դշխոյն Շամիրամ իւր չքնաղակերտ ամարատանը: Նաեւ Տիգրիսի եւ Եփրատայ բարձրահովիտք քիչ հետաքրքրական չեն եւ ոչ զուրկ բազմադիմի յիշատակներէ. անպատ շարք մը կը գտնենք հոս բերդերու եւ աւատական դղեկաց աւերակներու, եւ կը հանդիպինք՝ բաց ի Հայոց եւ ի Քրդաց՝ բազմաթիւ ցեղերու եւ աղանդոց, ի մէջ այլոց՝ Գըզըլպաշներու եւ Եզիտներու, որ այս անուամբ ծանօթ են իբր դիւապաշտք.

Բայց ահա երկաթուղւոյ առաջին չերտերը կը թափանցեն Փոքուն Ասիոյ լեռնադաշտերը. երեք գիծք կ'ելլեն Զմիւռնիայէն եւ կը մտնեն Հերմոսի, Կայիստրայ եւ Մէանդրի հովիտները. աւարտելու մօտ է Իւսկիւտարէն յԱնկիւրա ձգուող գիծը, որ եւ պիտի երկարաձգի մինչեւ Պաղտատ. արդէն իսկ խօսք կայ թէ Սամսոնէն ի Սեբաստիա եւ ուրիշ գծեր շինելու հրաման տրուած է: Ուրեմն անտեսական յեղաշրջութիւն մը կատարուելու մօտ է, զոր չենք կրնար անտարբեր նկատել. վասն զի խորին փոփոխութիւնք պիտի մուծուին ոչ միայն բնակչաց սովորութեանց, առեւտրական յարաբերութեանց, այլ նաեւ արեւելեան խնդրոյ հանգամանաց տեւականութեան եւ հաւասարակշռութեան մէջ:

* * *

Տարի մ'անցած է այն օրէն որ մտքերնիս դրինք հետազօտական ուղեւորութիւն մը կատարել այս կողմերը։ Ուղեգիծը շատ անգամ փոխուեցաւ. բայց վերջապէս որոշեցինք նաւել ի Տրապիզոն, կտրել անցնիլ Հայոց եւ Քրդաց բնակած վայրերը, Պարսից աշխարհին մեծ մասը, եւ՝ ըստ պարագայից յաջողութեան՝ նաեւ աւելի հեռուները մխիլ։

Օգոստոս 8ին ելանք Փարիզէն, մեզ հետ էր նաեւ մեր գրագիրը. երկրորդ օրը Մարսէյլէն ճամբայ ելանք Tamise նաւով։ Մեր ծովագնացութեան նկատմամբ չունինք ըսելիք մը. նաւը խարիսխ ձգեց ի Սիրա, Տարտանելլի, Կ. Պոլիս, Սամսոն ու Կիրասոն, եւ հասանք արդէն Տրապիզոնի նաւակայքը։

Ծովու կողմանէ զուարթ տեսք մ'ունի Տրապիզոն. իւր կենդանի գոյներով՝ ճերմակ, դեղին ու կապոյտ տներն իրենց կարմիր տանիքներովն աստիճանաբար կը բարձրանան կարգ ըստ կարգէ՝ բլրոյ մը կողին վրայ, գեղեցկատեսիլ պարտէզներով շրջապատեալ. հեռուն ի յետսակողմն՝ լրթագոյն հորիզոնին մէջ անհետ եղած՝ կը պարզէ լերանց ժանեձեւ կիսատեսիլ պատկեր մը։

Մեր Tamise նաւուն չորս կողմը, որ խարիսխ ձգած կը հանգչի խորշին մէջ, բազմաթիւ թեթեւընթաց կրերու բազմութիւն մը կը սպասէ ուղեւորաց՝ ցամաք հանելու։ Կ'աճապարենք ոտքերնիս դնել Փոքուն Ասիոյ այս կէտին վրայ, ուր պիտի սկսի մեր ուղեւորութիւնը։ Քանի մը վայրկեանէն արդէն ցամաք կ'ելլենք. դիմացնիս կ'ելլէ եւրոպական տարազով, բայց ազգային ֆէսը գլխուն՝ թարգման մը, որ կ'առաջարկէ մեզ իւր պատրաստականութիւնը։ Բայց օսմանեան հողոյն վրայ դեռ ոտք չդրած՝ պաշտօնեայք կը պահանջեն մեր թղթերը զոր թէպէտ կարդալ կարող չեն՝ կը պահեն քովերնին մինչեւ երկրորդ օրը։

Այնուհետեւ ազատ ըլլալով շրջելու քաղաքին մէջ՝ կը կտրենք կ'անցնինք նեղ ու աղտոտ փողոցներէ, յոռի սալայատակներէ, եւ կը հասնինք գաղղիական հիւպատոսարանն, ուր իմացընելով մեր ուղեւորութեան նպատակը՝ մաքսատան մէջ մեր արկղներու քննութեան համար առընթերակայ օգնական մը կ'առնունք: Հիւպատոսին ազնուութեամբ ընկեր կու տայ մեզ թարգման եւ ֆօլօս մը, եւ կ'երթանք մաքսատուն: Քննութիւնը կը սկսի: Քառանի չափ հետաքրքիրք ժողվուած են հոն բոլորակ մը յօրինելով: Առարկայք ամէն հետաքրքիր եւ անյագ ձեռքերուն մէջ շրջան կ'ընեն. եւ քիչ հոգ չի պատճառեր մեզ այս՝ մեր ճշգրտաչափ գործեաց եւ լուսագրական թաղանթիկներու նկատմամբ: Ուստի փակելով մեր արկղիկները՝ կը խնդրենք խօսիլ մաքսատան պետին հետ որ արգիլէ այնպէս սաստիկ խուզարկել մեր արկղերը: Այս շատ քաղաքավար բարձրաստիճան պաշտօնատէրն ըստ տաճկական օրինի երեք անգամ խոնարհելով կը բարեւէ զմեզ, եւ խահուէի սկահակներ եւ գլանիկ կը հրամցընէ: Ի վերջոյ՝ առ հաճութեան, ինչպէս կ'ըսէ, գաղղիացի հիւրերուն՝ հրաման կու տայ մաքսաքննչաց ազատ թողուլ մեր արկղերը համառօտ քննութեամբ: Բայց իր ամենայն բարեացակամութեամբ հանդերձ՝ չի կրնար թողուլ որ մեզի տրուին մեր վինչեստրեան ցրկիճները (carabine) պատերազմական զէնք նկատելով զանոնք. այսչափ միայն կրնայ ընել որ փոխանակ զինուորական վարչութեան յանձնելու, որ անմիջապէս զինարան պիտի ուղարկէր զանոնք, կը յանձնէ նահանգապետ վալիին, որմէ կրնանք բողոքել խնդրել՝ յաջողութեան բաւական հաւանականութեամբ:

Առանց յապաղելու կառավարութեան ֆօնաֆ այսինքն՝ պալատը գացինք, ուր ամէն հրապարակական պաշտամունք միացած են: Այս պալատն մեծ ուղղանկիւնի շէնք մըն է բաւական յոռի շինուած,

բայց աւելի եւս անխնամ պահպանուած։ Վալին՝ որ իւր նահանգին վարչութեան մեծ յօժարութեամբ եւ յաջողակութեամբ կը պատաղի, կը ճանչնայ մեր հայրենիքն (Գաղղիա) եւ մեր լեզուն գրեթէ առանց շեշտի կը խօսի։ Մեծաւ յօժարակամութեամբ ըսաւ որ պիտի տրուին մեզի մեր հրացանները, որովհետեւ գաղղիացի ենք եւ Տաճկաստանէն միայն պիտի անցնինք ի Պարսկաստան, եւ թէ ամէն դիւրութիւն պիտի մատակարարէ մեզ իւր նահանգին մէջ ուղեւորելու՝ տալով մեզ Բեւէկէ եւ զէնք կրելու արտօնագիր, եւ ընկեր ուղեկից տալով ոստիկաններ։ Յայտարարեց դարձեալ որ եթէ լուսանկար առնուլ ուզենք՝ օգնական պիտի խաւրէ մեզ ոստիկանութեան սպասաւոր մը, որպէս զի հետաքրքիր ամբոխը վանէ եւ խափանարարմանց առջեւն առնու։

Շատ գոհ ըլլալով իրաց այս յաջող ելից նկատմամբ՝ հաճութիւն զգացինք թափառիլ զիարդուպէտ։ Տրապիզոնի, ինչպէս նաեւ այլ արեւելեան քաղաքաց փողոցներու վրայ քիչ կանայք կը տեսնուին, եւ բաց ի Հայոց եւ ի Յունաց՝ ամէնն ալ քօղարկեալ։ Սակայն ցանցառ չեն նաեւ շնորհալի դէմքեր. գեղեցիկ եւ միանգամայն պչրող մահմետական կինը կը բանայ քօղն իբր այն թէ յանզգոյշ եւ յանգէտս։ Տեղ տեղ մարդկան բազմութիւն մը խռնուած է՝ առօրեայ մանրալոյց վրայ խօսակցելու։ Անդին կ'անցնին բեռնակիրները ցմէջք կրկնած ծռած՝ իրենց ուսոյ վրայ անհեթեթ ծանրութեամբ բեռներ շալկած։ Քիչ մ'անդին մեր առջեւ կ'ելլէ ուղտերու կարաւան մը։ Վատած ներդեւած այս թշուառ արարածները մին միւսին ետեւէն կարգաւ տողան եղած կը յառաջանան՝ այպշադէմ ու անտրտունջ, եւ ամէն քայլ փոխելուն՝ վզէն կախուած բոժոժիկը կը ղօղանջէ։ Բեռին ծանրութեամբ դանդաղացած իրենց թաթերը կը ճմլուին գետնոյն վրայ, բայց իրենց գնացքը չի փոխուիր. հանդարտաքայլ

կը Հետեւին ուղտապաններին՝ որ գաւազան ի ձեռին կարաւանին առջեւէն կ'երթայ։

Իրիկուան՝ իբր ժամը Հինգին՝ արճարանք կը խճողուին բազմութեամբ, եթէ միայն այս անուան արժանի են այն քանի մը խեղճ կրպակները, ուր կը ծախուին սուրճ, թէյ, աւանդականն բարկ օղի (mastic) եւ քանի մը անուակ լիմոնչեր։ Բարկ օղւոյն Հետ, որ անուակ մը մաքրողական ըմպելի է՝ կուտեն աւանինք գինովցոյ կամ թզոլոյ մէջ լուծելով պատրաստուած, կը բերեն նաեւ գաւաթ մը ջուր եւ ափսեայ մը կաղնովք, շաքարեղէնօք, ձիթնիթով, ոսկեխնձորներով, գարապղպեղով եւ քացախի մէջ պահուած սուրիչ խաւարաներով լի։ Ըստ սովորութեան մատերով պէտք է քաղել Հանել ափսէի մէջէն. անօրժակ կը բացուի ասով։ ՄաՀմետականք Հրապարակաւ չեն խմեր ոչ բարկ օղի եւ ոչ այլ ոգելից ըմպելի. բայց շատերն ի տան կը խմեն, եւ յաճախ՝ առանց չափաւորութեան։ Երբ օրը տարաժամի, Հազիւ թէ մզկիթայ երկնաբերձ աշտարակաց վրայէն եաթնք կարդացողին ոնդախոս ձայնը կը Հնչէ, վաճառողք իրենց կրպակները կը գոցեն, եւ մաՀմետականք մզկիթ կ'երթան աղօթելու։ Այն ատեն օրն անցած լմնցած է. եւ եթէ այցելութիւն մ'ունիս ընելու մութին գիշերուն, միայն լապտեր ի ձեռին կարելի է դուրս ելնել։

Շատ քիչ ուղեւորք կան "Իտալիա" յորջորջուող Հիւրանոցին մէջ. — որ ճշմարիտն ըսելով՝ մի միակն է Տրապիզոնի մէջ։ Սակայն քաղաքին Հայազգիներէն ոմանք Հան կերակուր կ'ուտեն. եւ ասոնք կը փութան պարզել մեր աչաց առջեւ մեր բռնած ճամբուն դժուարութեանց եւ վտանգաց զարհուրեցուցիչ պատկեր մը։ Յօժարակամ երկարաձիգ կը տողեն Հուզկահար յեղուզակաց շահատակութիւնները։ Իւրաքանչիւր նեղամուտ կապանի, ամէն անձուկ կրճի, դժուարանց Հեղեղատի մէջ

վտանգ կայ հանդիպելու անոնց։ Ժայռերու ետեւ դարանակալ նստած՝ հրացանով արձակմամբ նշան կու տան, երբ մերձենայ մարդ. ապա իրենցմէ մին կը կանխէ յառաջ կու գայ, եւ յայտնելով որ ի զուր է դիմադրելը՝ կը յորդորէ թողուլ որ կողոպտուի։ Արագութեամբ կը լմննայ գործողութիւնն, եւ այնուհետեւ ազատ ես ճամբան շարունակելու։ Մեզի համար վտանգն՝ որչափ կ'երեւայ՝ աւելի մեծ է. վասն զի եւրոպացի ուղեւորք հարուստ կը համարուին։

Փոքուն Ասիոյ հուղկահարք ալ ունին իրենց զրոյցներն՝ ինչպէս Կալաբրիոյ աւազակները։ Ամենէն համբաւաւորն էր Մանոլի, որ ամենուն զարհուրանք կ'ազդէր։ Մանոլի յոյն հովիւ մըն էր։ Օր մը խոյ մը գողցած էին իրմէ։ Մանոլի, որ կը ճանչնար գողը, դիմեց արդարութեան. բայց անտես եղաւ՝ իր աղքատութեան պատճառաւ։ Այն ժամանակ լեռներն առանձնացաւ, աւազակախումբ կը կազմեց, եւ այն օրէն ի վեր իր անուր քաջագործութեանց համբաւը դղրդեց երկիրը։ Ճամբաներն անկոխ անցնելի էին, կարաւանք կողոպտուած, անցորդք հազիւ փրկանաւորութեամբ կը պրծէին. նաեւ սուրհանդակք արգելուեցան եւ թղթատարութիւնն ընդհատեցաւ։ Այնչափ յանդգնեցաւ Մանոլի որ քաղաքներն իսկ կ'երթար եւ առանձնականներէն իր ըստ հեշտի պահանջած դրամը կ'առնուր։ Հասարակաց սարսափն իր բարձրակէտն հասած էր։ Իր դէմ արշաւանքներ կազմուեցան, բայց ի զուր. Թշուառ աշխարհապահ ոստիկանք անոր խմբին գնդակներուն զոհ կ'ըլլային. եւ Մանոլիի ազդեցութիւնն երթալով աճեցաւ։ Սակայն Մանոլի մեծանձն ալ էր. աղքատաց պարգեւներ կը բաշխէր, թշուառաց կ'օգնէր, եւ իբրեւ բարեպաշտ՝ եկեղեցիներ շինել կու տար եւ վանքերու դրամական նպաստներ կը բաշխէր։ Բայց երբ իր ձեռնարկութիւնք անդր քան զչափն յանդուգն սկսան ըլլալ,

եւ շատ ալ յաճախել, կառավարութիւնն անոր գլխոյ գին դրաւ՝ հազար ոսկի օսմանեան: Այս մեծագումար խոստումէն հրապուրեալ՝ փայտահար մայրեւոր մ'իր տապարովն սպաննեց զՄանուկն Յաղթանակաւ բերաւ հուղկահարին գլուխն ի քաղաքն, ուր վարձք իւր գործոյն առաւ հինգհարիւր ոսկի միայն . . . : Երկրորդ օրն սպաննուած էր մայրեւորն իւր խրճիթին մէջ, եւ Մանուկի վրէժը լուծուած:

Այս եւ այլ բիւր այսպիսի պատմութիւնները զմեզ չէին նախապաշարեր եւ սկսանք մեր ճամբորդութեան պիտոյքը նախապատրաստել: Գէորգ Մեսրոպեան անուն հայ երիտասարդ մ'առինք մեզի թարգման, որ մեր գրագրին հետ՝ հայթայթեց հագաց ուղւոյ պիտոյքն ու պաշարը: Մեզ եւ մեր ունեցածին համար քանի մը ձի բռնեցինք, որոնց հոգն յանձն առին երկու ջորեպան:

Ամենայն ինչ պատրաստ է. բայց մեզ կարեւոր կ'երեւայ փորձել մեր ձիերն, որ այնչափ երկարաձիգ ուղեւորութեան բազմավտանգ ճգանց տոկալու ոչ այնչափ ատակ կ'երեւան: Շրջագայութիւն մ'ըրինք մերձակայ յոյն վանքին՝ որ Տրապիզոնի վրայ իշխող Քոլաթ-տաղ լերան բարձրաւանդակ դարատափի մը վրայ կանգնած է: Այս ճամբան մեր ձիերուն որպիսութիւնը պիտի յայտնէր, վասն զի ճամբան շատ զառիթափ, խորտաբորտ եւ կապճուտ է: Եւ ոչ մին դայթեց. ուստի վստահ ենք՝ որ եթէ խնամով գործածենք՝ մինչեւ Կարին կը հասցնեն զմեզ, ուր ձիերու մեծ առեւտուր կայ:

Յոյն այս վանքն, ուր երէց մը եւ քանի մը քորք կը բնակին, հին դղեկի մ'աւերակաց մէջ պատսպարուած է. մեծ է իւր համբաւն՝ ի մանաւորի Յունաց քով, ուր ուխտի կ'երթան Աստուածամօրն որ Սումելաս կամ Միրիամ-անա կը յորջորջուի: Հին մատուռ մը կայ՝ որ Ս. Կուսին նուիրեալ է, եւ փորուած է ժայռի մէջ, որուն գաւիթը կը զարդարեն հետաքրքրական անպաճոյճ քանդակներ:

Այս դարատափէն վեհ տեսարան մը բացուի աչաց առջեւ։ Ոտքին տակն է Տրապիզոն, քովը ծովը կը սփռի, որուն ալիքները վէտ վէտ կը ճօճացընէ մեղմ սղոխ մը, եւ որուն կապուտակութիւնն հեռուն կը խառնուի երկնից լրթագոյն անհունութեան հետ. ձախ ու աջ կողմ կ'ամբառնան ատամնաձեւ ժանեւորեալ լեռներ. իսկ զառիթափ բլրակաց վրայ՝ ծխախոտի եւ լազուտի (եգիպտացորենոյ) անկարանք կը տարածուին, որոնց մէջ կանայք կ'աշխատին ըստ եղանակին, եւ որոնց խիստ բաց գունով տարազները կարծես դաշտերը կը զարդարեն ծաղկօք։

Իջանք բարձրաւանդակէն, եւ քաղաքին քիչ մը հեռուն՝ ծովամերձ կանգնած Սուրբ Սոփիա հռչակաւոր մզկիթը գացինք։ Հին յունական մատուռ մըն է այն՝ մզկիթի փոխուած. իսկ իւր կենդանի էակներ պատկերացընող քանդակներն խորտակուած են. կաղնոյ դրասանգ մը՝ միայնակ ու տխրատեսիլ՝ կը բոլորէ պատառի կամարի մը շուրջը։ Երկու այլեւայլ ուղղութեամբ մուտքեր կը տանին ներս, որոնց ամէն մին սպիտակակուռ մարմարէ ճակատ ունի երկու սեանց վրայ բարձուած, որոնք իբր չորս մետր բարձրութիւն ունին. սեանց գլուխն երկու խոյակներ կը նստին, բայց մին միայն ի գլուխ հանուած է բոլորովին։ Մզկիթին քով իբր հնգետասան մետր բարձրութեամբ կ'ամբառնայ չորեքկուսի աշտարակ մը, որ զանգակատուն էր. ատկէ այժմ ետինք կը կարդան։ Հին զանգակները լռին կը կենան։

Արշաւասայր ետ դարձանք։ Վաղն առտու՝ կանուխ այգուն՝ պիտի թողունք Տրապիզոնն եւ պիտի ուղեւորինք դէպ ի Կարին։





# ՏՐԱՊԻԶՈՆԷՆ Ի ԿԱՐԻՆ

*Կարին, 29 Սեպտեմբեր 1890:*

Ութ օրն որ կեցանք ի Տրապիզոն՝ գործածեցինք մեր ուղեւորութեան պիտոյքը՝ թէեւ ոչ առանց դժուարութեան՝ հայթայթելու։ Բաց ի մեր գաղղիական անցագրէն՝ առինք Թէզքէրէ մը, այսինքն՝ հրաման Պետութեան մէջ շրջելու, դարձեալ մեր վինչեստրեան եւ մարթինեան հրացանները կրելու արտօնագիր, եւ վերջապէս նաեւ պույուրուլտու մը, այսինքն՝ Տրապիզոնի վալիին մասնաւոր յանձնարարագիրը, որով աշխարհապահ ոստիկանաց օգնութիւնը կրնայինք խնդրել։ Այսպէսով օսմանեան վարչութեան հրամանաց պահանջածէն իսկ աւելին ըրած էինք։

Օգոստոս 28ն է մեր ճամբայ ելլելուն օրը։ Երեք ձիոյ վրայ բարձին մեր վրանը, բացօթեայ բանակելու անկողինները եւ արկղ մ'ուր դրուած էին լուսանկարական կազմածք ու սարուածք, մեր փամփուշտք, դեղատուփը, գրքերն, աշխարհացոյց տախտակներն ու յիշատակարանք, պէսպէս իրեղէնոք լի պայուսակ մը, գինեսրուակաց կրկին արկղիկներ եւ այլեւայլ պաշարեղէնք։ Ձիերը, զոր երկու ջորեպանք կը վարեն, հանդարտաքայլ պիտի կտրեն ճամբան, բայց որոշեալ օթեւանաց մէջ պիտի միանանք կրկին իրարու։

Տրապիզոնէն Կարին իբր 64 ժամու ճամբայ է, այսինքն՝ 310—330 քիլոմեդր։ Ճիշդն ոչ ոք գիտէ։ Գիշեր ու ցորեկ սրընթաց արշաւող թղթատար սուրհանդակն երեք եւ երբեմն նաեւ չորս օրուան մէջ կը կտրէ ճամբան. բայց ձմեռն՝ երբ լերանցամէջ կրճերը ձիւնախաղաղ ծածկուած են, այլ եւս անցուդարձի ժամադիր ժամանակամիջոց չկայ։ Իսկ

մենք պիտի հասնինք Կարին 8—10 օրուան մէջ արագցընելով կամ դանդաղացընելով մեր ընթացքն ըստ իւրաքանչիւր տեղեաց հետաքրքրական ըլլալուն կամ ոչ եւ կամ նաեւ ըստ մեր հաճոյից:

Քաղաքէն որ ելանք՝ մեր թղթերն ուզեցին եւ մանրակրկիտ քննեցին. այնուհետեւ մտանք Մաշկատէրէի նեղահովիտն, որմէ հոսող համանուն մանրագետակը Տրապիզոնի ճիշդ քովը Սեւ-Ծով կը թափի. ուղին լաւ շինուած է համեմատաբար, բայց արդէն շատ տեղ հեղեղատեալ ու խոռչացած: Ի Մաթարաճի, որ արդէն 217 մետր բարձր է ծովէն, մեր ձիերը խան մը դրուեցան, որ խեղճ շէնք մըն է, ուր սովորաբար ընդարձակ ախոռներ կ'ըլլան եւ քանի մը խցեր, ուր լուերը կ'եռան, եւ ուր կ'ապաստանին կառուանապետք եւ ուղեւորք. մենք ուղղեցինք մեր վրանը հեղեղի մ'ափանց վրայ:

Ժամը չորսին ելանք երկրորդ առտուն: Ժամ մ'ետքը լմնցուցած էինք մեր նախաճաշիկ սուրճը, ծալած անկողինները, վրանը պատատած ու ձիերը թամբած: Համեստաւոր ձիերը բեռնաւորած էին ջորեպանք: Առտուն այսչափ կանուխ ժամանակ կը հանդիպինք ուղտերու երկարատող կարաւանաց, որոնք՝ ինչպէս ծանօթ է՝ միայն գիշերը կը քալեն, իսկ ցերեկը կը ճարակին կամ կը հանգչին: Երկարատեւ այս ուղտերը մինչեւ 35 աստիճան ցրտութեան կը դիմանան, եւ ըստ հասակի եւ մեծութեան 200—400 քիլոկրամ բեռ կը կրեն: Մեր ճամբան կտրող այս կարաւանները Պարսկաստանէն կու գան կտրելով Դաւրէժէն ի Տրապիզոն եղած անջրպետը՝ ճամբուն վրայ անցնելով Կարնէն: Տաճկաստան այս կարաւաններէն իբր 200.000 ոսկի տարեւոր մուտք ունի: Կը հանդիպինք նաեւ բազմաթիւ կարաւաններու ձիոց եւ ջորեաց, որոնց զանգակիկներուն ղօղանջման արձագանքը կը թնդացընէ նկարագեղ հովիտը: Ճէվիզլիքն անցնելէն ետքը՝ հեղեղին գետափունքը կը սեպանան, եւ

ճամբան ալ բացուած է դժուարաեպ լերանց կողին վրայ։ Մեր ձիերն՝ ըստ իրենց սովորութեան՝ գահավէժ ճամբուն ճիշդ եզերքէն կը քալեն, այնպէս որ գլխու պտոյտ կը պատճառէ։

Խամսիքէօյը կ'անցնինք քիչ մը, եւ ժամն երկուքուկէսին կը բանակինք արդէն ամպերէն վեր՝ ծովու մակերեւութէն 1.200 մեդր բարձրութեամբ։ Հազիւ թէ արեգակը լեռնագագաթանց ետեւը վար կը պահի, նսեմացեալ հովտին վրայ կը տատանի դանդաղաբար թխայորդ ամպը, կը տարածուի կ'իջնայ իբր վիթխարի անկողնոյ մը վրայ եւ կը ննջէ։ Անդին մեր գլխուն վրայ քանի մ'ամպածուէններ՝ Զիղանայի ընդկաուած՝ կը կագին ու կը գոռան։

Յառաջ վարելով մեր ուղին՝ կը բարձրանանք մինչեւ Զիղանայի կրճանձուկքն, — որուն անունը, կ'ըսեն, յուշարար մնացորդ է Չէնկաններէն (Գնչուներէն), — 2.000 մեդրէն ալ աւելի բարձր։ Ճամբան մանուածապատ կը դառնայ կը բոլորի անտառախիտ լերանց կողերուն վրայ՝ զոր բազմաթիւ հեղեղներ կ'ակօսեն կը կտրեն։ Կարծես թէ Եւրոպա ենք, այնպէս նման են նոյն նսեմաստուեր անտառաց, նոյն վճիտ ջուրերուն։ Ասկէ անդին անհետ կ'ըլլան ծառերը. աժդոյն ու անօսրաբոյս խոտը կը ճարակին լայնադմակ ոչխարներն, որ լերան անթիւ նրբուղիները խայտաբղէտ կ'ընեն. կը հասնինք արդէն Զիղանայի կիրճը։ Այս կէտէն՝ դէպ ի հիւսիս՝ կը տեսնուի Տրապիզոնն, երբ անամպ է երկինքը, եւ դէպ ի հարաւ՝ յերեւան կու գայ շքեղատեսիլ լերանց տողան մը՝ հեռուն երկնից միագոյն կապուտին մէջ։ Վար իջնալու համար՝ աջ կողմը կը թողունք ճամբան, վար կ'ոստնունք ձիէն եւ գահավէժ կ'իջնանք — ըստ ամենայն խստութեան բառիս — կոպճուտ քարուտ հեղեղատի մը մէջէն։ Ետեւէն կու գան ձիերն, այս ընտիր անասունները կը հետեւին՝ առանց երբեք գայթելու. քիչ մ'ետքը

կրկին կը գտնենք մեր թողած ճամբան. ամբողջ կէս ժամու ճամբան կը շահինք այսպէս կտրելով: Բայց այս հեղեղատն ունեցած է նաեւ իր զոհերը՝ ձիոց եւ ուղտուց դիակներ, զորոնք այնպէս իմաստասիրօրէն կը յօշեն ագռաւները: Այս անասունքն անշուշտ ձմեռը ձիւնայոյզ բքի մը մատնուած են յանակնկալս: Բնութիւնն կանաչազեղ չէ Զիղանայի հարաւակողման լեռնափեղկին վրայ. բան չի տեսնուիր, բայց միայն լեռներ՝ երաշտին ու բուսազուրկ ապառերկ, եւ միայն գորշախառն եւ դեղնկեկ ժայռեր կարծես ըստ հեշտի ցանուած աստ անդ: Պատճառն այն է որ ամպերը չեն կրնար յաղթել անցնիլ լերանց այս առաջին շղթան որ Սեւ-Ծովուն եզերաց պատուար կը կանգնին: Բնութեան ալ տեսքը յանկարծ կը փոխուի. ա՛լ ծառ չի տեսնուիր. օդն՝ աւելի չոր, եւ անտառն՝ ցանցառ կ'երեւայ: Ընդհակառակն բուսանիւթոյ անհնարին առատութիւն կայ. եւ արդէն պղինձը՝ կրնանք ըսել՝ ամբողջ Հայաբնակ գաւառաց հիմունքը կը կազմէ: Տաճիկները չեն շահագործեր զանոնք եւ անվրդով ալ կը մերժեն արտօնութիւն տալու այլոց: Այսպէս նաեւ Մատէնի բովերը, որ շատ հարուստ կ'ըսուին, կը սպասեն բրչին առաջին հարուածոյ: Կ'անցնինք, եւ թողլով խանն՝ ուր կ'ապաստանին ձմեռն կարաւանք եւ կը սպասեն մինչեւ որ լեռնանցքը բացուի եւ անցանելի ըլլայ, եւ կ'երթանք կ'ուղղենք մեր վրանը Զիղանայ գիւղն, ուր աշխարհիս ամէնէն անտանելի ճանճերուն կը հանդիպինք:

Ուրախութեամբ կը թողունք Զիղանայ գիւղը, եւ կը մտնենք տխուր ձորն ուր կը հոսի ճշմարիտ ողմաբեր գետ մը, որ Սեւ-Ծով կը թափի, եւ նախ կորէ կ'անցնի Արտասայի մէջէն: Արտասա կարեւոր վաճառատեղի մըն է՝ երկու ժայռերու մէջ կանգնած, որոնց միոյն վրայ աշտարակի մ'աւերակք կան, որ է Արտասապոլիս: Մեր թղթերն խնդրեցին հոս, եւ երբ մեր պ—յ—բ—լ—ն ցուցուցինք՝ մեծարա-

նօք խոնարհեցան հրամանին առջեւ։ Քիչ մ'ետքը լսեցինք մեր ետեւէն արշաւասոյր երիվարաց ոտից եւ զանգակկաց աղմուկ մը. Թղթատար սուրհանդակն էր այն որ Կարին կ'երթար։ Թղթատարին ընկերակից են աշխարհապահ ոստիկանք, թէեւ չեն երբեմն կարող պաշտպանելու յուղկահար աւազակաց դէմ. սուրհանդակը կը մղէ կը տանի իւր առջեւէն նամակածրարներ բարձած ձիերը, որ հանգոյ ի հանգոյց կը փոխուին ամէն վեց ժամ։ Տրապիզոնէն Կարին թղթատարը բաւական լաւ է. գրեթէ կանոնաւորապէս կը հանին նամակներն իրենց հասցէներուն, բայց միայն երբ վարչութիւնը կը խափանէ կը բանէ. բայց որովհետեւ շատ կասկածոտ են Տաճիկք՝ այս վերջին դէպքը բաւական յաճախ կը պատահի։

Ի Քարասու կամրջին կամարներն փլուզած տարած էր տղմաբեր հեղեղն՝ երկու օր յառաջ գետայարդյք մը պատահելով։ Քարասու տուն մը կայ ուր յոռի ջուր գտանք եւ հեռուէն բերուած քանի մը խնձոր։ Հոս ջերմութիւնն անտանելի է. ջերմաչափը շքոյ մէջ 39° կը ցուցընէր։ Այս տեղն թերեւս աշխարհիս ամէնէն զարհուրելին է. չորս կողմն ուրիշ բան չի տեսնուիր, բայց եթէ կրացած ժայռեր, որ՝ երբ արեւը ծագած է՝ բիւր գոյներով կը փայլփլին։ Վերջապէս կը հասնինք Պէշ-Քիլիսէ (Հինգ Եկեղեցիք) գիւղը, թէեւ Պէշ-Քիլիսէի "հինգ եկեղեցիները„ պարզ զրոյց մըն են։ Մեր վրանը կանգնեցինք տան մը տանեաց վրայ։ Եղանակաց անհնարին խստութեան պատճառաւ՝ հարթաձեւ տանիքն մէկ մետր խորութեամբ կոխուած հողով ծածկուած են, եւ պատերը հազիւ փոքրիկ ծակեր ունին իբր պատուհան. մանաւանդ թէ նաեւ ներսը տախտակամած առանձնանոց մը կայ շինուած՝ ամրափակ, ուր կը ննջէ ընտանիքն ամբողջ՝ ձմեռ ժամանակ։ Հոս փայտ եւ ածուխ չկայ, այլ կը տաքնան վառելով «Թոք», որ է անասնոց աղբ՝ արեւու

մէջ չորցուած, եւ զոր պատրաստելը կանանց գործն է։ Ձմեռուան համար լիուլի ժողուած է պաշար, եւ ամէն տեղ կը տեսնենք աթարներու թխագոյն բրգեր։

Պէշ-Քիլիսէէն կարճ անջրպետ մ'անցնելով Տալտապան կը հասնինք, եւ վերջապէս Կիւմիւշխանէ փոքրիկ քաղաքին այց կ'ելլենք, որուն դիրքը ծամբէն 360 մեդր վեր է։ Տասն քիլոմեդրէն աւելի տեղ կ'անցնինք մրգաստանեաց քովէն, որ այնչափ տեղ կը տարածուին եւ որոնց պտուղները մեծ համբաւ ունին. գետն որ յորդած ողողած է՝ իւր պարարտացուցիչ տիղմը կը սփռէ այս մրգաստանեաց մէջ. սակայն նաեւ հոս աթարն է որ կը վառուի։ Նախաճաշն ի Կիւմիշխանէ (Արծաթահանք) ըրինք, եւ ցորենի եփուած չօթեր տուին մեզ իբր հաց, — եւ այս հացը միայն պիտի գտնենք այսուհետեւ ամէն տեղ, — զոր լօշ (լաւաշ) կը կոչեն։ Մեր գալստեան լուրն ամէն կողմ հասած էր. մեզի եկան առաջարկեցին հին դրամներու բազմութիւն մը, որոնց մէջ գտանք նաեւ քրայցէր մը եւ Պիոսի Թ. մէկ չքադրամը։ Կիւմիւշխանէի բնակիչքն իբր 5.000 են, որ են՝ ըստ բազմութեան՝ Յոյնք, Տաճիկք եւ Հայք։ Գրեթէ բոլոր Յոյնք տեղւոյն արծաթահանքին մէջ կ'աշխատին, որ ամէն ժամանակ չահագործուած է։

Տալտապանէն երբ կ'ելլէինք՝ զմեզ շրջապատող գիւղացիք "Մոսկով են սոնք" կ'ըսէին. այս անունը կու տան Ռուսաց վերջին պատերազմէն ի վեր, եւ այժմ նաեւ անխտիր ամէն Եւրոպացի նոյնպէս կ'անուանուի։ Հասանք Սորտա զուտ տաճկաբնակ գիւղը, ուր միայն մահմետականք կան եւ այն՝ շատ մոլեռանդ։ Կերակրոյ ժամանակ՝ մտադիր ըլլալ տուաւ տաճիկ մը մեզմէ մէկուն՝ թէ հացի փշրանք մը կոխած է, որ մեծ մեղք է կ'ըսեն։ Ուրիշ մը կը զարմանայ որ միեւնոյն պնակէն չենք ուտեր։ Երրորդ մը կ'ըսէ. "Ի՞նչու պատառաքաղ կը գործածէք. Աստուած մեզի ձեռք տուած է. կը

*թշնամանենք զինքը՝ երբ չենք զայն գործածեր:»
Շատ շատ կը ներեն որ գոնէ լոյծ կերակուրները դրգալով ուտուին: Այս հասանք Քէշի-Գալէ (Այծաբերդ)· գիւղին այս անուանակոչութեան պատճառն է աւերակ բերդ մը, թերեւս Գենուացիներէն շինուած, եւ կառուցուած է այնպիսի ժայռի մը վրայ որ կը տիրէ ճամբուն մինչեւ 230 մեդր, եւ ուր կարծեն տեղւոյն բնակիչք թէ ճիւաղները կը բնակին:*

*Երկրորդ օրն՝ առտու կանուխ՝ սկսանք բերդն ելլել· միւսներէն աւելի քաջասիրտ գիւղացի մը հաւանեցաւ մեզի առաջնորդ ըլլալ: Հին այս ամրոցին չորս կողմը աղաւնեաց տարմ մը կը թռչտի: Ահա հասանք ժայռին ստորոտը· ապառաժին մէջ կոփուած բացուած նրբուղի մը կը տանի մինչեւ կատարը: Կ'անցնինք ծակէ մ'որ անշուշտ նախկին դուռն է, եւ կը մտնենք բերդին ներսը: Դեռ ցայսօր կանգուն կը կենան որմոց մասեր՝ իբր յիսուն մեդր, մեծամեծ ստորերկրեայ սրահներ, չորեքկուսի աշտարակ մը եւ ապառաժի մէջ փորուած գուբ մը: Ժայռին կողերուն վրայ կը տեսնուին որմոց հետքեր՝ որ երբեմն բազմաթիւ որմածներ կը կազմէին: Բայց զարմանալին այս է որ այս սարին բարձունքէն կը բղխէ կը ցայտէ աղբիւր մը: Իսկ գբին մէջ կը կենան թնդանօթներ՝ փլատակաց ներքեւ թաղուած: Մեր առաջնորդ գիւղացին կ'ըսէ՝ թէ գտնուած են հոս կաւէ ափսեյներ արձանագրութեամբք ծածկուած, մագաղաթեայ ձեռագիրներ եւ չորեքկուսի աշտարակին մէջ ալ անօթներ՝ լի ոսկւով եւ արծաթով: Բերդին վերեւը կայ քարայր մ'որուն այցելութեան կ'երթանք. մեր առաջնորդն որ այնչափ քաջասիրտ էր, մեզի հետ չմտաւ այրը, ուրուականաց եւ հսկայից վախէն, որոնք՝ ըստ իւր բանից՝ խողդած էին յանդուգն գեղացի երիտասարդ մ'որ համարձակած էր այս վիհը մտնել: Մուտքը շատ դիւրին չէ. մենք ձեռաց վրայ սողալով մտանք մին-*

չեւ այրին յատակը, եւ չգտանք անցք մ'որ մերձակայ ամրոցին հետ հաղորդակցութիւն ունենայ։ Քէչի-Գալէէն մինչեւ Քառրակ հետաքրքրական բան մը չկայ. կտրեցինք անցանք Վաւուքն, որ Խարչէգի եւ Ճորոխի ջրոց ջրաբաժն է, եւ որուն բարձրութիւնն է իբր 1.900 մեդր։

* *
*

*Սեպտեմբեր 4.* — Մեր ուղեւորութեան ութերորդ օրը։ Կը մտնենք Ճորոխ գետոյն մերկ հովիտն, որ կ'երթայ կը թափի Սեւ-Ծով Բաթումի քով։ Օղուխի քով կը սկսի Բաբերդի բարձրաւանդակն (1.600 մեդր բարձրութիւն), որ իւր ցորենաշատութեամբ տասնեակ մը հայ գիւղեր կը բուծանէ։ Կանգ առինք ի Վարզահան, ուր լուսանկար առինք հայկական Երեք Եկեղեցեաց մնացորդաց, որոնք արդէն ութերորդ դարու (789 Յ. Ք.) շինուած կ'ըսուին, եւ նկարագրական ճարտարապետութիւն մ'ունին։ Օդոյն չորութեան պատճառաւ շատ լաւ պահուած են քարերը։ Դեռ դարուս սկիզբն այս եկեղեցիք անարատ էին. բայց 1829ին տաճկառուսական պատերազմին աւերեցան։ Վարզահանի քով հեծեալ ոստիկան մը մեր առջեւ ելաւ, գննեց զմեզ բաւական ժամանակ եւ հեռացաւ արշաւասոյր։ Մեր գալուստն այսպէս արդէն ծանուցուած է։ Վերջապէս կ'երեւայ Բաբերդ իւր բլուրներովն՝ կրիայի նման թիկամբք, իւր գորշ տներով եւ աւերակամբք իւր հինաւուրց միջնաբերդին որ երկնից կապոյտին մէջ անխառն ու պայծառ կ'երեւան։ — Հոս պիտի սկսի մեր գերութիւնը։

Բաբերդ 1.550 մեդր բարձր եւ 10.000 բնակչօք քաղաք մըն է՝ երկու բլրոց մէջ շրջապատուած. ունի բաւական կարեւոր վաճառանոց մը, եւ ուր Մայիսին եւ Սեպտեմբերին մեծ տօնավաճառ կ'ըլլայ։ Գրեթէ առհասարակ միադստիկոն տները լաւ շինուած չեն, եւ ձմեռուան խիստ ցրտութեան

պատճառաւ փոքրիկ լուսանցոյցներ միայն ունին։ Քաղաքն երկու մասի կը բաժնէ Ճորոխն՝ որ հարաւէն դէպ ի հիւսիս կը հոսի, բայց չորս կամ հինգ կամուրջներ կը միացընեն քաղաքին մասերը։ Արեւելեան բլրին պատուար կը կանգնի ընդարձակ միջնաբերդ մ'աւերակ՝ իր պատնէշներով եւ յառաջակարկառ շինութեամբք որ զառիվայրին մինչեւ կէսը կը ձգուին։ Կ'երեւայ թէ երբեմն պատնիշաց երեքպատիկ շարք մը կը պատէր բոլոր քաղաքը. բայց այս տներէն ու պատնէշներէն բան մնացած չէ։

Մեր Բաբերդ հասնելուն, որ օրը Սեպտեմբերի չորսն էր եւ ժամն՝ իբր երկուքին կէսօրէն վերջը, ճամբուն վրայ սպասող ոստիկան մը բրտութեամբ կը ծանուցանէ մեզ քաղաքապետական շահապարանն երթալու հրամանը։ Ի զուր կ'առարկենք՝ թէ Բաբերդ պիտի դադարինք, եւ թէ հազիւ հարիւր մեդր անդին պիտի երթանք օթեւանինք վրանաբնակ. չ'անսար ամենեւին. մեր ձիոց առջեւը կը վազէ, կը բռնէ անոնց սանձէն, եւ երբ իր այս ճգանց զուր ըլլալը կը տեսնէ, իբրեւ զօրաւոր ապացոյց մը կ'առնու գետնէն մեծ խճաքար մ'որով կը սպառնայ մեզ, եւ վերջապէս գոհ կ'ըլլայ ըսելով՝ թէ կը սպաննէր զմեզ, եթէ հրացանը քովն ունենար։ Նորանշան ընդունելութիւն։ Գետին ամենակից փոքր մարգագետնոյ մը վրայ իջանք, եւ վար առինք մեր ձիոց թամբերը։ Ցետոյ գնացինք գայմագամին, որ այս եղանակին իր ատենական ժողովներուն կը պարապի մեծ վրանի մը ներքեւ. կ'առաջարկենք ցուցընել իրեն մեր պույուրուլտուն, մեր Ֆէրմէնէները, անցագրերն ու զէնք կրելու արտօնագրերը. շնորհալի կերպով մը կը մերժէ գայմագամն մեր թղթերը նայիլ, եւ կը խոստանայ այն անխոհեմ ոստիկանը պատժել։ Արդարութիւն պիտի ըլլայ մեզի։ Իբր թէ այնպէս։ Կը դառնանք մեր բանակետղն ուր հասած ըլլալով մեր ջորեպանք, կը կանգնենք մեր վրանը։ Այս վայրկենին այցելու-

թեան կու գայ Հայարապետին՝ քաղաքին զօրաբաժնին հրամանատարը. մեծ հետաքրքրութեամբ կը քննէ մեր զէնքերը, եւ երթալու ժամանակ՝ կը ծանուցանէ թէ մեր բանակատեղին հեռու ըլլալով քաղաքէն՝ մեր քով պիտի մնան երկու ոստիկան, որ պիտի պաշտպանեն զմեզ եւ մեր պիտոյքը հայթայթէն։ Վաճառանոց կ'երթանք. ոստիկան մը մեր ետեւէն կու գայ, եւ մեր պաշարեղէնքը կը կրէ։ Երբ յետս դարձանք՝ սկսան ճաշ պատրաստել. ոստիկանք վառեցին կրակ եւ համեմանքները պատրաստեցին։ Սուրդիւ տաճիկ ոստիկանք շա՛տ պատուական անձինք են։ Նոյն միջոցին ոստիկանապետ մ'եկաւ եւ իմացուց որ լուսանկար առնուլ արգիլուած է մեզի։ Մեր ոստիկանք՝ ինչպէս կը կասկածէինք արդէն՝ պահապան դրուած էին մեզի։

Երկրորդ առտուն՝ այգուն՝ ելանք վրանէն եւ մերձակայ փոքրիկ բլրան վրայ շրջագայութիւն մ'ընելու գնացինք։ Անմիջապէս ոստիկանաց բազմութիւն մը, պաշտօնակալ մը եւ "փոլիս-էֆէնտին" կը դիմեն մեր վրայ. եւ քաղաքավարութեամբ կ'իմացնեն՝ թէ ոչ միայն յատակագիծ առնուլ եւ լուսանկարել արգիլուած է մեզի, այլ եւ ոչ բարձանց վրայ ելլել։ Նոյնպէս քաղաքավարութեամբ պատասխանեցինք՝ թէ կը գործածենք այն իրաւունքը զոր ամէն ազատ մարդ ունի՝ ծծելու առաւօտեան օդը։ Բայց այս ազնիւ մարդիկ միայն իրենց աւագաց հրամանը կը ճանչնան։ Վերջապէս կը դառնանք մեր տեղը՝ ընկերակցութեամբ այս մեր ուղեկցաց, եւ որովհետեւ տեսնուելու ամենեւին վախ չկար, չար հաճոյք մ'ունեցանք՝ վրանափեղկերը գոցելու եւ լուսանկարն առնելու հին միջնաբերդին, որ շատ լաւ կ'երեւայ վրանադրան փեռեկներէն։ Մեզի դէմ գործադրուած այս միջոցները մեկնութեան պէտք ունէին, այնու մանաւանդ որ այնչափ յանձնարարագրեր ունէինք. ուստի գնացինք մեկնութիւն պահանջելու գայմագամէն որ կողմնապահի տեղա-

կալի մը պաշտօնն ունի գրեթէ։ Բայց վասն զի բացակայ է գայմագամը, մեր այլեւայլ հարցմանց պատասխան կու տայ ոստիկանութեան տեղակալ մը (Գօ-լաղըս), որուն կրած Թրքին բերանը խաչակրաց ժամանակէն է, եւ վրան կայ քանդակուած I. M. I. Զմեզ ճամբան կեցընող ոստիկանը կը պնդէ՝ թէ մենք սպառնացած ըլլանք իրեն. եւ որովհետեւ մահմետականի մը խօսքին ուղղութեան վրայ կասկածիլ իսկ չ'ըլլար, ուրեմն պիտի չպատժուի։ Միւլազիմն չի հաւանիր հրաման տալու որ լուսանկար առնուլ եւ հին բերդն այցելել կարենանք։ Իսկ մեր պահապանաց նկատմամբ կ'ըսէ՝ թէ ի պաշտպանութիւն տրուած ըլլան մեզի եւ "ի պատիւ"!։ Այն ժամանակ յայտնեցինք՝ թէ որովհետեւ այս այսպէս է, վաղը ճամբայ կ'ելլենք եւ կը բողոքենք մեր վրայ եղած այս վերահսկողութեան։ Հազիւ թէ վրան դարձանք՝ իմացուցին ջորեպանք թէ ոստիկանութիւնը մեր ձիերը փականքի տակ դրած եւ սաստիկ սպառնացած է խանապետին՝ եթէ դուրս բանալ թողու։ Ուրեմն բռնութիւն ի գործ կը դրուէր զմեզ Բաբերդ պահելու։ Բայց ի՞նչ պատճառաւ, զայն չըսին մեզ։ Թէեւ կը լսէինք Հայերէն՝ թէ Տաճիկք զմեզ զօրապետ կը կարծէին, որ եկած ըլլանք ընկճեալ քրիստոնեայ ժողովուրդն ապստամբութեան յորդորելու, բայց չէինք կրնար հաւատալ թէ նաեւ իշխանութիւնք այս ծիծաղական զրուցաց հաւատային։ Կրկին անգամ քաղաքապետարան գնացինք. գայմագամն իր կանանց քովն է՝ կ'երեւայ. կը ստիպուինք մեր վաղեմի ծանօթին՝ միւլազիմին՝ հարցընել՝ թէ "ի՞նչու կ'արգիլուինք իբր կալանաւոր. ի՞նչու թոյլ չի տրուիր մեզ լուսանկար առնելու, քաղաքին շրջակայքը պտտելու, աւերակ բերդը զննելու, ուր ոչ զինուոր կայ, ոչ թնդանօթ, ոչ փամփուշտ մը. ի՞նչու մանաւանդ մեր ձիերը փականքի տակ կը դրուին։" Միւլազիմին պատասխանն այն կ'ըլլայ՝ թէ Երզնկայի սպարապետն է որ

հրաման խաւրած է քննելու մեր արկղերն՝ յատա-կագծեր, աշխարհացոյց տախտակներ եւ լուսան-կարներ գտնելու. եւ թէ պարտական է հնազան-դիլ իւր պետին կամաց։ Կը ցուցրնենք մեր պույու-րուլթուն, որով աւելի կը մեղմի միւլազիմն, եւ կը յայտարարենք՝ թէ Կարին պիտի երթանք, ուր դաղ-ղիական հիւպատ մը կը նստի։ Ճիշդ այս րոպէիս լուր կու տայ գայմագամն թէ ինքն՝ իբրեւ քաղա-քային պաշտօնեայ՝ գարովելու բան մը չի գտներ մեր վրայ, եւ թէ ազատ ենք՝ իւր կողմանէ՝ երթա-լու եւ գործելու ըստ հեշտի։ Միւլազիմն ալ իւր կողմանէ կը յայտնէ որ պիտի չարգելու զմեզ, բայց Կարնոյ վալիին հրամանաւ եւ մեր պաշտպանու-թեան համար մեզի ուղեկից պիտի ըլլայ մինչեւ Կարին։ Նոյն վայրկենին հեռագիր կու գայ Երզն-կայի սպարապետէն որ կը հրամայէ հետազօտել մեր կազմածքն։ Երբ մերժեցինք՝ նոր հեռագիր բրին յԵրզնկայ եւ եկաւ պատասխան՝ թէ պէտք են զմեզ Բաբերդ պահել։ Կը փոխանակուին ուրիշ հեռա-գրեր ալ։ Բայց նոյն հրամանք կը կրկնուի։ Ուրեմն կալանաւոր ենք!։ Ուրիշ բան չմնայ, բայց եթէ միւլազիմին հետ սուրճ մը խմելէն ետքը՝ հեռագիր ուղղել մեր հիւպատին։

Շաբաթ առաւուն՝ առաջին ժամուն՝ տեղւոյն զինուորական հրամանատար հազարապետն "բարե-կամական„ այցելութիւն մ'եկաւ ընելու։ Յայտա-րարեց թէ իշխանութիւն է մեզի ճամբայ ելլելու երբ որ ուզենք, բայց ներեալ չէ յատակագծեր յօ-րինել եւ լուսանկար առնուլ։ Յայտնեցինք զար-մանքնիս մեզի դէմ եղած իրերուն. բայն նա կը պաշտպանէր թէ կալանաւորուած չէինք, նաեւ ոչ մեր ձիերը փականքի տակ դրուած։ Ի՞նչ կ'ըսէք ասոր։ . . . Թերեւս կարծէք՝ թէ ա՛լ լմնցաւ ամէն բան։ Բայց ո՛րչափ քիչ կը ճանչնաք Տաճիկները։ Հազարապետն, գայմագամն ու միւլազիմն միաբան կը ծանուցանեն՝ թէ ազատ ենք, եւ սակայն դեռ չէ

լմնցած ամէն բան: Նոր Հեռագիր մը կու գայ Հազարապետին՝ որուն ճակատը կը մթագնի, եւ կը տրուի մեզ Հրաման քաղաքապետանոցն երթալու: Հոն՝ գայմագամին եւ իր բազմալիր ատենին առջեւ՝ կը Հարցնեն մեզ թէ առա՞ծ ենք յատակագծեր, եւ երբ կը ժխտենք, կը խնդրեն որ թուղթ տանք քննելու մեր աղխն, բայց ի զուր. թէ՛ գայմագամն եւ թէ՛ իր ատեանն շատ վարանաց մէջ ինկած են:

Կէսօրէն վերջ՝ արգիլուած ըլլալով բերդն ելլելու, այցելութեան գացինք Հայոց եկեղեցւոյն եւ դպրոցին: Շատ լաւ ընդունեցան. ցուցուցին մեզի դասագրքերը՝ աւետարան, աշխարհագրութիւնք՝ ուր “Հայաստան„ բառը չկայ, թուաբանութիւնք, բայց եւ ոչ պատմութեան գիրք մը. այս վերջինը խստիւ արգիլուած է: Եկեղեցւոյն մէջ շատ հին պատկերներ տեսանք. զարմանալին այն է որ այս պատկերները քիչ մը նման են ճենացւոց գործերուն: Ծանօթ է արդէն որ Տրդատ երբ իր յաղթական արշաւանաց մէկէն կը դառնար՝ գերի բերաւ ճենացիներ, որ Մամիկոնեան կոչուեցան: Ս. Գրիգոր Լուսաւորիչ քրիստոնեայ ըրաւ զանոնք, որ նախ ի Միջագետս Հաստատուեցան եւ ապա յԱրտաշատ որ Երասխայ վրայ է: Մեծաւ քաջութեամբ կռուեցան Պարսից դէմ 439—463 տարիները, եւ Հայոց քով Մամիկոնեանց անունն ու քաջասրտութիւն Հոմանիշ էր. այսօր իսկ շատ մ'ընտանիք կը պանծան իբր սերունդ Մամիկոնեանց, բայց այս քաջ պատերազմողաց ճշմարիտ սերունդք Հաւանական է թէ Մալազկերտի կողմանքն են: Թերեւս կապ մը կայ Տրդատայ այս ճենացի գերեաց եւ Հայ եկեղեցեաց այս նկարներուն մէջ:[1] Մեզի ծանուցին՝ թէ նաեւ միայն անոր Համար որ այսպէս խնամով զննեցինք

---

[1] Հեղինակն Արամ կը գրէ Հոս երկու անգամ ալ անունը: Ինչպէս այս մասին, նոյնպէս այլ քանի մը կարծեաց երաշխաւորութիւնը Հեղինակին վրայ կը մնայ:

Ծն. Թրգմ.:

այս պատկերները, Տաճիկները պիտի փճացընեն զանոնք մեր երթալէն վերջը։ Բայց սատի դժուարին է գաղափար մ'ունենալ այն ընկճման վիճակին, որուն ենթարկեալ են Հայք եւ ընդհանրապէս ամէն քրիստոնեայք։

Կանայք շատ աւելի մոլեռանդ են քան այրք․ տաճիկ կին մ'երբ տեսաւ մեր անցնիլը, գոչեց․ "Ի՛նչպէս կը բաղձայի ցեխնետել ասոնց երեսին...։" Սակայն այս ամէն մոլեռանդութեամբ հանդերձ բազմութիւն մը մահմետականք կու գան խորհուրդ հարցընելու եւ դեղ խնդրելու, եւ մինչեւ անգամ կ'աղօթէին իրենց ալլահին որ հարիւրապատիկն հատուցանէ մեզ։ Տեղն է ըսել՝ թէ ոչ խորհրդակցութեան եւ ոչ դեղոց համար վճարմունք կ'ուզէինք.... Վերջապէս իրիկուն կ'ըլլայ եւ տակաւին պատասխան մը չենք առած ճամբայ ելլելու մասին. այն ատեն կը խուրենք մեր թարգմանը կանխաւ ծանուցանելու գայմագամին որ վաղն առտու արեւ ծագելուն ճամբայ պիտի ելլենք։ Դարձեալ կ'աղաչեն որ գոնէ 8—9 ժամ սպասենք, եւ թէ ինքն հազարապետը պիտի գայ ծանուցանելու՝ թէ իր յղած եւ ընդունած հեռագրաց արգասիքն ինչ եղած է։

Կիրակի առտու կը ծանուցունէ մեզ "փոխ-էֆէնտին" թէ կրնանք ճամբայ ելլել․ ոստիկանք պատրաստ են եւ մեզի կը սպասեն, բայց հրաման տրուած է որ ճամբէն ամենեւին պիտի չշեղինք։ Միւլազիմն ալ ձի հեծած կու գայ ուղեկցելու․ իրեն կը հետեւի ոստիկան մը։ Կալանաւորաց պէս՝ այնպէս կը վարուին մեզի հետ։ Սակայն դեռ ճամբայ չելած՝ առատ պաշխիշի մը զօրութեամբ՝ կ'իմանանք թէ նոյն գիշեր քաղաքապետը ժողով գումարած էր եւ անվերջանալի բանակռիւ մ'եղած էր, եւ ամէն անգամ իւր կարծիքը յայտնած։ Մէկը կ'ըսէր՝ թէ գաղղիացի զօրապետ ենք, եւ մեզի կը սպասեն հազարաւոր զինեալ Հայեր՝ ձորի մը մէջ պահուըր-

*տած, ուրիշ մը կը պնդէր՝ թէ Ռուսիոյ կողմանէ խաւրուած լրտես ենք որ յատակագծեր առնունք. երրորդ մը կը հաստատէր՝ թէ Հայք բուն ի Պարսկաստան գումարուած են եւ թէ մենք կ'երթանք անոնց գլուխն անցնիլ: Ամենն այս տեսակ կարծիք կը յայտնէին՝ բաց ի մէկէն, որ կ'ըսէր՝ թէ պարզ գաղղիացի ենք մենք, զորոնք արգիլելու իրաւունք չունին: Վիճաբանութեան վերջ տուած էր վալիի վերջին մէկ հեռագիրը, որով կը հրամայէր Կարին առաջնորդել մեզ ուղեկցութեամբ ոստիկանաց:*

*Մեր ուղեւորութեան սկիզբն իսկ մեր վրայ հասած այս նորանշան փորձանքն արժանի էր պատմելու, որով յայտնի կը նկարագրուի Տաճկաց կասկածոտութիւնն ու պնդագլխութիւնն. բայց ատոր դեռ այս արկածն պիտի ունենայ իր շարունակութիւնը:*

*Բաբերդէն մինչեւ Քոփ-խան* (1.900 *մեդր*) *նշանակելու արժանի բան չկայ: Առաջին անգամ կը տեսնենք Քրդաց քանի մը բանակետղ՝ իրենց սեւ վրաններով եւ իրենց անասուններով՝ որ շրջակայքը կ'արածին: Մուշեւերեկ խանէն ետքը կը սկսինք Քոփ լեռն ելլել եւ կը մտնենք նեղ կիրճ մը, զոր կը կազմեն անհեթեթ օրինակաւ ցիրուցան եղած ժայռեր: Քոփ-խան աղաւնեաց բազմութիւն մը կայ, որոնցմէ մի քանին զարկինք մեր ճաշին համար: Հոս ոստիկանաց պահականոց մը կը հսկէ ապահովութեան պահպանութեան:*

Սեպտեմբեր 8:—*Շարունակութիւն Քոփ լեռն ելլելու ճամբուն: Վերը՝ մեր գլխուն վրայ վայելչաբար կը սաւառնին անգղեր: Լեռն ալ կ'ակօսեն կը կտրեն քանի մ'առուակներ, որոնց տեղը կ'իմացուի անմիջապէս նաեւ սակաւ գալարութեամբն: Մեր առջեւ կ'ելլէ եղանց նախիր մը: Քոփ լերան վրան* (2.450 *մեդր*) *աչաց տեսութեան առջեւ կը պարզուի բլրոց ծով մը. կրնայինք ըսել՝ պաղած*

թանձրացած անհուն կոհակներ, անապատ թաւշեայ կերպասով ծածկուած՝ պէսպէս գոյներով ցօլացած։ Վարը՝ կը տարածուի Սեւ-Ջրոյ (Արեւմտեան Եփրատայ) բարձրահովիտն, որուն եզերաց հետ գալարութեան դոյզն շերտ մը կը սփռուի կ'երկարի։ Արագութեամբ կ'իջնանք Քոփ լեռը, եւ դադար կ'ընենք ի Փունակապան, տեղ մը՝ ուր Պարսից կը վերաբերի, թէեւ այսպիսի դէպքեր յանցաւ են։ Փունակապանի մէջ կը գտնենք Գզլպաշներու ("Կարմրագլուխ") աղանդոյն անդամներէն, որ կը պաշտեն զԱլի շիկահեր։ Շատ մոլեռանդ ըլլալով՝ կը խորշին Տաճկըներէն։ Կ'ըսեն թէ իրենց առ օտարս մնացած ատելութեանն ի նշան՝ կ'աղտոտեն որեւէ կերակուր որ կը գնուի իրենցմէ։

Կանուխ կ'ելլենք Փունակապանէն, վասն զի Սեւ-Ջրոյ եզերաց վրայ լաւ որս կարելի է ընել բուն մեզ։ Արդեամբք ալ անցնելով Աշխալուն, այս 6 մինչեւ 800 մեթր լայն ձորին մէջ, ուր գետն մանուածապատ շրջաններ կ'ընէ եւ բազմաթիւ ճիւղերու անջատուած է, բազմաթիւ թռչուններ կ'ընդոստուցանենք՝ բադեր, արագիլներ, տարեխ թռչուններ, անգղեր ու բազէներ եւն։ Ձորն յետոյ կը նեղնայ, եւ ժայռի մը ստորոտն կ'երեւայ Ճախտարիճ նկարագեղ գիւղը։ Այնուհետեւ կը մտնէ ճամբան լեռնադաշտակ մ'որ շատ քիչ անհարթութիւն ունի եւ բաւական լաւ մշակուած է. կ'անցնինք Ճինիս-խանէն, զոր Ռուսք կործանած են։ Վերջապէս կը հասնինք Եէնի-խան (1.900 մեթր)։

Վերջին օթեւանն ենք Կարին հասնելու։ Նախ կը հասնինք Ըլըճա ուր կը դադարինք նախաճաշ ընելու։ Ըլըճա (Եղկ-Ջուր) երեք ակնաղբիւր ունի հանքային ջրոյ եւ երեք ջերմուկ, իսկ շրջակայքն ալ ածխահանք կայ, թէեւ դեռ շահագործելու թոյլտուութիւն չէ տրուած, սակայն կ'ըսեն թէ շատ հարուստ է հանքը։ Եթէ արտօնութիւն առնուլ կարելի ըլլայ եւ շահագործուի, շատ շահաւէտ

կրնայ ըլլայ հանքն, եւ նաեւ մեծ ծառայութիւն կը մատուցանէ Կարնոյ, ուր ձմեռն երկայն է եւ խիստ եւ փայտն ալ՝ թանկ։

Ըլըճա ոստիկանութեան աւագապետ մը ընդառաջ եկաւ մասնակցելու մեր ուղեկցաց հրամանաւ վալիին. եւ այս, կ'ըսէ, ի պատիւ մեր է՜։ Կարնոյ մեծատարած եւ բարձրադիր դաշտավայրին մէջ, զոր ամէն կողմանէ լերանց բոլորակ մը կը պատէ, ծառ չի տեսնուիր։ Ջերմութիւնն ու փոշին անտանելի են։ Հեռուն՝ հարաւ-արեւելեան ուղղութեամբ՝ կը զանազանենք քաղաքն որ լերանց ստորոտն քանի մը բլրոց վրան նստած է, եւ իւր ամրութիւններն որ աջ ու ձախ կողմը կը տարածուին։ Միայն մինարէները եւ քանի մը ծառեր քաղաքին տխուր տեսքը կը մեղմեն քիչ մը։ Կը սպասենք մեր աղխին ու կազմածին հասնելուն, եւ անկից հետ կը մտնենք ներս՝ քաղաքին երեքպատիկ պատուարներէն անցնելով։ Հոն զօրագլուխ մը կեցած է, որպէս զի զմեզ ուղղակի կառավարչին ապարանքը տանի. բայց մեր միւլազիմը կ'ըսէ անոր թէ զուր է զմեզ համոզելն մեր հիւպատոսարանէն զատ ուրիշ տեղ մ'երթալու։ Ուստի միայն զօրապետն ու մեր պաշտօնակալք կ'երթան հոն։ Մեր քով կը կենայ պարզ ոստիկանն, որ քաղքին մէջէն կ'առաջնորդէ զմեզ, եւ կ'անցընէ մաքսատան առջեւէն, ուր ըստ խիստ հրամանի վալիին մանրամասն կ'ուզեն քննել մեր կազմածքը։ Սակայն մենք առանց կենալու կը հասնինք մեր հիւպատին տունը։ Հազիւ թէ ոտքերնիս տուն կը դնենք՝ մաքսապետ մը կու գայ եւ հրամանաւ վալիին կը պահանջէ քննել մեր արկղերը։ Ի զուր. մենք անցանք արդէն Տրապիզոնի մաքսատնէն, ուղղակի կու գանք Տրապիզոնէ, ուստի Կարնոյ մաքսատունն՝ որ Պարսկաստանէն եկած հակերը քննելու համար է, գործ չունի մեր արկղերը քննելու։ Այս է հիւպատին կարծիքը. ուստի մեր արկղերը կը մնան հիւպատոսարանն ապահովութեան համար, մինչեւ որ

*խնդիրը պարզ է։ Մեր հիւպատոսն, որուն չէին իմացուցած մեր ի Բաբերդ արգիլուիլնին, եւ այս՝ ընդդէմ Դաշանց, այնպէս մեզ չէ՝ ինչպէս նաեւ մենք ալ՝ անիրաւացի պահանջմանց տեղի տալու։ Սակայն պիտի սկսի վալին իւր հակառակութիւններն եւ երեք շաբաթ Կարին պիտի պահէ զմեզ։*





# Ի ԿԱՐԻՆ

## ՔԱՂԱՔՆ ՈՒ ԲՆԱԿՉԱՑ ԲԱՐՈՅՔՆ

*Կարին, 2 Նոյեմբեր 1890։*

*Կարին (Արզրում=Արզ-էր-Րում կամ Արզն Հոռոմոց) բերդաքաղաք մըն է ընդարձակածաւալ դաշտավայրի մը հարաւ-արեւելակողմն հիմնուած, ուստի կը հոսի Սեւ-Ջուրն, այսինքն՝ Եփրատ, եւ գրեթէ անհրաժեշտ հանգոյց ամէն կարաւանաց, որ կը կտրեն կ'անցնին հայաբնակ լեռներէն։ Քաղաքն երբեմն շատ բարգաւաճ էր, այլ այժմ բաւական նուաղած՝ Ռուսաց վերջին արշաւանաց եւ Հայոց գաղթելուն պատճառաւ։*

*Ամէն ժամանակ եւ ամէն աշխարհակալք՝ Պարսիկք, Արաբացիք, Մոնկոլք ու Տաճիկք կարգաւ, ամէնքն ալ առաջին կարգի մարտագիտական կարեւոր կէտ մ'են նկատեր այս քաղաքն, եւ ամէնքն ալ կարգաւ ամրացուցած։ Կարին իւր երեքկին պատնէշներովն, իւր բերդակիր լեռներովն արդեամբք անառիկ կ'ըլլայ, եթէ ըստ բաւականի բազմաձեռն եւ պնդակազմ գնդեր ապահովեն իւր պաշտպանութիւնը։*

Քաղաքին մէջ մեծ տեղ կը գրաւեն գերեզմանատունք: Ինչպէս բովանդակ Արեւելից սովորութիւնն է, տօն օրերն խուռներամ կը դիզուի ամբոխն գերեզմանոցները։

Քաղաքին իսկ մէջ, որուն փողոցներն նեղ են ու մանուածապատ, եւ տարւոյն սկիզբէն մինչեւ վերջն աղտոտ, շատ տեղ կը գրաւեն աւերածները. սակայն տներուն մեծագոյն մասն ամուր շինուած է քարէ, բայց գրեթէ ամէնն ալ մէկ դստիկոն ունին. տանիքներն հարթաձեւ եւ կէս մետր խորութեամբ հողով ծածկուած՝ կը կազմեն հարթ տամալներ, ուր ամառուան տօթագին օրերն կը ննջեն բնակիչք գիշերները։

Կարնոյ փողոցներն ուրոյն անուն ունին, որ ցանցառ բան է մահմետական երկիրներուն մէջ, եւ այս անուանք բնակչաց անհանդուրժող եւ մոլեռանդն բարուց յայտարար նշան են. օրինակի համար փողոցի մ'անուն է՝ "Անհաւատներն խղդողներու փողոց։"

Գարնան փողոցներն անանցանելի են աղբիւներէն, որոնք ձմեռն դուրս ձգուած էին եւ ձեան տակ թաղուած. շներն ու ագռաւներն առատ ճարակ կը գտնեն: Նաեւ թշուառ արարածներն, առուակահէնք կրնանք ըսել, աղմախառն հեղեղներուն մէջ՝ որ լեռներէն կ'իջնան, կը պրպտեն կը փնտռեն յորդաջուր հեղեղներուն քշած բերած մնացորդ իրեղէնները. երջանիկ են, եթէ քանի մը հնացած դրամիկներ գտնեն, "հնութիւններ՝" ինչպէս հոս կ'անուանեն: Եւ ո՛չ ալ Յառաջակողման Ասիոյ մէջ հետաքրքիր չէ հին դրամներու: Շատ գիւղացիներ գոնէ քսակիկ մ'ունին այսպիսեաց, դրամներ՝ յունական, հռոմէական եւ հայկական, դրամներ՝ ամէն դարու եւ ժամանակի. մետաղեայ դոյզնադրոշմ այս պարզ քծուարները փոքրիկ գանձ են այս թշուառ աղքատաց, որ մեծ յոյս ունին անոնց վրայ: Բազմաթիւ են նաեւ կեղծ դրամներն որ երկրին մէջ կը յօրինուին:

Կարին՝ որ գրեթէ 2000 մեթր բարձրութեան մէջ կանգնած է, շատ պայծառ օդ ունի եւ շատ չոր: Ձմեռը կը տեւէ վեց, եւ երբեմն եօթ մինչեւ ութ ամիս, եւ ցուրտն ալ շատ խիստ է. քիչ անգամ չէ որ ջերմաչափին ցրտութեան 32 աստիճանը կ'իջնայ: Ձիւնը յորդութեամբ կը տեղայ. եւ լեռներէն փչած ցրտին հողմունքն կը կուտեն կը դիզեն ձիւներն եւ չեղջակոյտներ կը կազմեն քաղաքին փողոցներուն մէջ, ուր կ'արգելուն հաղորդակցութիւնն՝ երբեմն նաեւ տնէ միւս տուն, եթէ ամէն օր չաւլեն բնակիչք իրենց դրան առջեւն եւ նեղ անցուդարձի ճամբայ չբանան: Գարունը յանկարծ կու գայ եւ քիչ կը տեւէ. օդոյ բարեխառնութիւնն արագ կը բարձրանայ, բլուրները կը ծածկուին ծաղիկներով, արօտներուն մէջ թանձրախուռն կը բուսնի խոտ, եւ դաշտավայրին (որ անծառ է) բերրի գետինը կը բուսցնէ առատութեամբ գարի ու ցորեն: Այնուհետեւ մի միակ վախնալու բան կայ, եւ այս է երաշտութիւնը. այնչափ տարապայման տօթագին են երբեմն ամառուան ջերմութիւնքն:

Խիստ է օդաբաժինս, բայց միով բանիւ՝ առողջ, եթէ ի բաց առնուք ձիւնահալքի ժամանակն, երբ թանձր մէգ կը պատէ երբեմն օրերով եւ նաեւ շաբաթներով:

Կարին չունի այս օրս նշանաւոր յիշատակարաններ. պատճառն այն է՝ որ եթէ շատ շինութիւնք ի գլուխ հանուած են Փոքրուն Ասիոյ այս կողմերն, բայց ոչ միայն չեն իսկ երազած մարդիկ նորոգել զանոնք եւ ոչ իսկ պահպանել, այլ նաեւ շատ բան ալ կործանած, եւ դեռ ցայսօր կը կործանեն: Տաճկըներն ամենեւին ակնածութիւն չունին բանէ մ'որ արուեստագիտական կամ պատմական արժէք ունի: Քանի մը տարի յառաջ՝ նոր գտնուած յունական շինութիւն մ'աւերեցին, եւ անոր նիւթն գործածուեցաւ թնդանօթագօրու զօրանոցի մը շի-

նուԹեան. Հին բաղանիք մըն էր այն՝ քաղաքին հարաւակողմն, ուր քարի մէջ փորուած ագուգաներով ջուր կը բերուէր հեռուէն։ Հին միջնաբերդն, որ այժմ զինուորական մԹերանոցներու փոխուած է, կը բարձրանայ քաղաքին միջնավայրն՝ բլրան մը վրայ։ Ցառաջ ժամանակաւ կրկին պատնիշայ որմածներ կը պատէին զայն, եւ կը պատսպարուէր չորս աշտարակներով, որոնց մին՝ Թէփսի-մինարէ՝ ամէնէն բարձրն էր, եւ պահականոց-դիտարան էր քաղաքին եւ շրջակայից։ Այժմ ալ կանգուն է Թէփսի-մինարէն, բայց պարիսպները պատող փոսերն ծածկաԹաղ եղած, եւ որուն մի մասին վրայ է այժմ ձիերու վաճառանոցը։

Միջաբերդին քովն է Ճէպ-խանէն, զոր չեն մոռցեր նորոգել, եւ որ այսօր՝ Թէեւ խարխուլ ու մնացած՝ կը գործածուի իբր վառօդանոց։ Պարսիկ լեզուաւ եւ քուֆէ գրերով իւր դրան վրայ քանդակուած արձանագրուԹիւնը մինչեւ ցամն 962 կը հասցնէ իւր հնուԹիւնը։ Այս արձանագրուԹիւնն է. "Ծառայք Աստուծոյ, միտ դրէք բանծիս։ Ես՝ Մելի-Խան՝ եկայ Հռոմայ երկրէն, ընտրեցի այս տեղն ի բնակուԹիւն, եւ որպէս զի Թողում յիշատակ մը՝ շինեցի այս շէնքը, ուր քառասուն սենեակ որոշեցի ի բնակուԹիւն Իմաստնոց եւ Գիտնոց։" Այո, Ռիշլիէօ եւ ոչ այնչափ բրած է (գաղղիական) Ճեմարանին եւ իւր քառասուն Անմահից համար։ Այս քառասուն սենեակներէն մէկ քանին ցայսօր ալ կանգուն են. սենեակներն երկու կարգ են, զորոնք կ'անջատէ բացօԹեայ մնացած փողանցք մը, որուն ծայրն ուրիշ խուց մ'ալ կայ՝ աճարանն, որ երբեմն զարդարուած էր որմին վրայ դրուագուած ազնիւ քարերով, զորոնք յափշտակած տարած են Ռուսք 1829ի արշաւանաց ժամանակ։ Ճէպ-խանէի դուռն կը պատէ տերեւազարդուց դրասանգ մը՝ քարի վրայ քանդակուած. եւ երկու կողմն կը բարձրանան կրկին աշտարակներ (ՉիՖԹէ-

մինարէ), կանաչ ու կարմիր յախճապակիներով դրուագեալ։ Ըստ աւանդութեան մին վարպետ մը եւ միւսն անոր աշակերտը շինած են։ Միեւնոյն ժամանակ երկուքն ալ սկսան բարձրանալ՝ արմաւենեաց պէս շիտակ, բայց աշակերտինը թերեւս աւելի վայելուչ էր եւ ազատաձեւ: Գահավէժ աշտարակէն վար նետեց ինք զինքն վարպետը նախանձէն եւ դժկամութենէն դրդեալ, եւ նաեւ աշակերտն՝ տխրութենէն ընկճած՝ ինկաւ մեռաւ չուզելով ապրիլ վարպետին մահուանէն ետքը։

Ուրիշ սակաւ նշանաւոր հին յիշատակարանաց մէջ կրնանք յիշել՝ գթաշ-խան, որ ոճրագործաց բանտն է, քանի մը մզկիթներ եւ բազմաթիւ շիրիմներ որ ցայսօր իսկ կը յարգուին: Երկու հատն ի մասնաւորի, որ Կիւմիւշլիւ-Կիւմպէթ (Արծաթագմբէթ) պերճահնչիւն անունը կը կրեն, բոլորշի շինութիւնք են կոնաձեւ յարկով՝ հաստաբեստ քարերէ կանգնուած, եւ հինգ մինչեւ վեց մեդր բարձրութեամբ։ Այս շիրիմներն Արաբացիք թողուցած են։

Զբօսանք շատ չեն եւ ՚չ բազմադիմի Կարնոյ մէջ. սակայն ամէն ուրբաթ եւ տօն օրերն քաղաքին գլխաւոր սրճարանաց մէջ նուագայ հանդէսներ կը տրուին։ Սովորաբար երեք յոռի երգիչներ՝ որոնք Արեւելից մէջ շատ քիչ յարգ ունին, ամենայն զօրութեամբ կ'երգեն ռնգախօս ձայնիւ, ընկերակցութեամբ այլեւայլ գործեաց, որ են քնար (սազ)՝ կիթառի նման, ջնար (քէմէնչէ)՝ ուղղագիր փոքրիկ ջութակ, եւ տաւիղ (սանթուր), որ կը կազմուի յատակի մը վրայ ձգուած մետաղեայ թելերէ, զոր կը բախեն երկու փոքրիկ փայտիկներով: Նուագախմբին պակը կը կազմէ չորրորդ գործի մ'ալ՝ տեսակ մը թմբուկ։ Այս "արուեստագէտք„ առտու կը սկսին եւ չեն դադրիր մինչեւ որ արեւն իւր մարը խոնարհի, երբ ետինքն հնչէ եւ կոչէ ի մզկիթ, եւ երբ՝ զօրանոցներու մէջ զինուորք աղօթքներ կ'երգեն

եւ Ալլահի օրհնութիւնքն կը մաղթեն իջնալ Վեհափառ Սուլթանին վրայ։

Կարնոյ սրճարանաց մէջ լիմոնջըներ, թէյ ու սուրճ միայն կը մատակարարուի. ոստիկանութեան հրամանն ոգեւոր ըմպելիքներն արգիլած է։ Սակայն եւ այնպէս հազուադէպ չէ արբշռութիւնն թէ՛ քրիստոնէից եւ թէ՛ մահմետականաց քով, որ աւանց միտ դնելու Մարգարէին հրամանաց՝ կը խմեն գաղտուկ ցքի ու բարկօղի։ Յոյնք եւ Հայք են ոգելից ըմպելի վաճառողները. բայց գնողն այն տեղ չի կրնար խմել, այլ շիշն առնուլ եւ տունն տանիլ։ Հասան-Ղալէի վալին ոգելից ըմպելեաց գործածութեան աճման առջեւն առնելու համար ցքեվաճառներն պատասխանատու ուզեց ընել արբեցող գործած յանցանաց. շատ մեծ գտան ցքեվաճառքն այս պատասխանատուութիւնն, եւ նախամեծար ընտրեցին փակել կրպակներն. օղի խմողներն գոհ եղան այրելու գինոգին գործածելով։

Սոյն Հասան-Ղալէի հրամանին պատճառաւ անհնար եղաւ մեզ գինի հայթայթել՝ նաեւ հիւրանոցին մէջ, որ միակն է քաղաքին, եւ որուն դրան վրայ փայտեայ նշանագրոշմի վրայ նկարուած է "Ճաշարան-Ընթերցարան Կարնոյ„ տաճիկ, հայ եւ գաղղիերէն լեզուաւ։ Կ'երեւայ թէ կարելի էր հոս երբեմն գիրք ու լրագիրներ գտնել։

Ոստիկանութիւնը մեր բնակութեան չորս կողմն խստիւ հսկել կու տայ, զմեզ միշտ լրտես կարծելով. եւ հազիւ երբ մութ կը պատէ չորս կողմն, քանի մ'աւելի յանդուգն Հայեր կը սպրդին կու գան գաղտագողի՝ մեզ իրենց տրտունջներն յայտնելու։ Պարզմտութեամբ կը յայտնեն որ զմեզ իրենց փրկիչ կը կարծէին — ճիշդ այս բացատրութեամբ — երբ մեր գալուստն իմացան. բայց այնչափ մեծ է իրենց վախն որ միայն խօսիլն մեզի հետ՝ քաջասրտութեան գործք մըն է։

Պատճառն այն է որ Կարնոյ նահանգին մէջ շատ իսկ ի զօրութեան է քմահաճ վարչութիւն մը։ Գիրք, գրութիւն մը չի կրնար մտնել առանց մանրակրկիտ քննութեան, եւ այն ի՛նչ խստութեամբ։ Աշխարհագրաց այն տախտակք որ Հայաստան անունը կը կրեն, խստիւ արգիլեալ են. վասն զի Տաճկաց համար Հայաստան չկայ։ Երկու տարի յառաջ է որ Պարսից ընդհանուր հիւպատոն Կարին եկաւ իւր պաշտօնատեղին. իւր առօրին գրքերն սահմանագլխուն վրայ արգիլուեցան՝ առանց միտ դնելու հիւպատոսական ազատութեան։

Այս քմահաճ վարչութիւնն ի գործ կը դրուի մանաւանդ քրիստոնէից վրայ, որոնց մեծ մասն են Էջմիածնական Հայք, որոնց թիւն գաւառիս մէջ է իբր 40,000 (*)։ Իրենց կրօնական պետն է կաթուղիկոսն, որ կը նստի ի Ռուսիա, Երեւանայ մօտ՝ Էջմիածին, որ նոյն Հայոց Հռոմն է։ Երկու ուրիշ կաթուղիկոսունք՝ սահմանափակ իշխանութեամբ՝ կը նստին մին Աղթամար վանքն՝ Վանայ լճակին մէկ կղզւոյն վրայ, եւ միւսն ի Սիս՝ Կիլիկիոյ մէջ։ Բաց ատի երկու պատրիարք ալ ունին ի Կ. Պոլիս եւ յԵրուսաղէմ։ Այս կրօնական եւ քաղաքական գլուխքն՝ Սահմանադրութեան մը վրայ՝ զոր 1863ին շնորհած է Սուլթանը, կը ջանան՝ թէեւ ի զուր՝ պաշտպանել Հայերն ամէն տեսակ զրկանքներէն զոր կը կրեն ի Տաճկաց։ Թէեւ օրէնքը կ'արգելու զէնք կրել, բայց ցգլուխ զինեալ են Քրդերն եւ ազատ համարձակ ալ կը շրջին. բայց Հայք՝ եթէ ամենափոքր դաշոյն մ'ալ ունենան՝ բանտ կը ձգուին։ Գաւառիս վարչական խորհրդոյ մէջ պատշաճ տեսեր են զանազանութիւն մ'ընել անդամոց ըստ իրենց կրօնից. նախ դաս դաս բաժներ են զանոնք, ապա իւրաքանչիւրին ուրիշ գունով թանաքաման են տուեր, սպիտակ՝ մահմետականաց, եւ կապոյտ՝ քրիստոնէից. եւ այս այնպիսի մեծ բարեփոխութիւն մըն է որ բոլոր Վիլայէթին մէջ շատ խօսուեցաւ ասոր վրայ։

Հայք ունին այնպիսի յատկութիւններ, որոնցմէ բոլորովին զուրկ են Տաճիկք։ Հայք ճարտար են, ժիր եւ աշխատող․ իրենք կը պահպանեն գլխաւոր արուեստները, եւ Փոքուն Ասիոյ գրեթէ բովանդակ վաճառականութիւնը։ Սակայն ունին նաեւ դարերով նուաճեալ ազգաց մոլութիւնները։ Իրենց նկարագիրն քիչ հետաքրքրական է, բայց սակայն անհնար է չկարեկցիլ իրենց թշուառ վիճակին, որուն ենթարկեալ են՝ բնակելով մահմետականաց մէջ։

Կարնոյ վիլայէթին մէջ թշուառութիւնը մեծ է, եւ վտանգ կայ աւելի մեծնալու ձմեռ ատեն։ Վաճառականութիւնը շատ կրած է, եւ կառավարութեան այս տարւոյ համար ցորենի արտահանութիւնն արգիլելով՝ չեն կրնար գիւղացիք իրենց հունձքը վաճառել։ Դրամն երթալով կը նուազի․ հասարակաց թշուառութեան համոզիչ փաստ մըն է այն որ գործածուած դրամոց կէսը ծակած է․ վասն զի առնուած են ասոնք կանանց մանեակներէն՝ որ իրենց զարդերն իսկ դուրս կուտան։ Բազմաթիւ գիւղացիք մաքսանենգութեան ձեռք կը զարնեն ապրուստ հայթայթելու համար։

Օսմանեան ծխախոտի-վարչութիւնը համեմատաբար աժան կը գնէ ծխախոտն արդիւնաբերողներէն՝ հոխան 3 ղրուշով։ Բազմաթիւ մաքսատներ ունի, եւ սակայն մաքսանենգ խաբէութիւնն արգիլել չի կրնար։ Մաքսանենգներն՝ գրեթէ ապահով անպատիժ մնալու՝ ցերեկով իսկ իրենց գործքը կը տեսնեն․ այսպէս 150 մաքսանենգք՝ Մարթինի հրացաններով զինուած՝ կ'ելլեն Տրապիզոնէն 220 հակ ծխախոտով, որուն գինն էր 20,000 ֆրանք։ Հեռագիրն կ'իմացընէ ասոնց Բաբերդէն անցնիլն, ինչպէս ծանուցած էր նաեւ ճամբայ ելլելը․ սակայն եւ ոչ փորձ ըրին արգիլելու։ Այս ծխախոտն պահեստ կը տրուի գիւղացւոց քով, որ յանձն կ'առնուն փոքր քանակութեամբ քաղաք մտցընել, ուր կը ծախուի սովորաբար ոստիկաններէն եւ զինուորներէն։

Տաճիկ բանակն՝ որ գեղեցիկ ձեւ մ'ունի ի Կ. Պոլիս եւ քանի մը մեծ քաղաքաց մէջ, թշուառ երեւոյթ մ'ունի երկրին խորքերը։ Քիչ անգամ կ'առնուն իրենց թոշակն. զգեստնին պատառատուն է, հողաթափնին՝ կտոր կտոր, ոմանք մինչեւ անգամ բոկոտն։ Կարին, որ Հայաբնակ գաւառաց ամենակարեւոր ամրացեալ կէտն է, գնդերն իրենց պատշաճ թուոյն հազիւ քառորդն ունին։

Կարնոյ ձիերն, — ո՜հ, ինչ մեծ հեծելազօր կրնան ունենալ Տաճիկք. — փոքրիկ են, բայց կրակոտ, ջղոտ եւ անհաւատալի չափով տոկուն. իրենց ծնկակարթերը շատ նուրբ են, եւ ոտքերն ջորւոյ ոտից չափ ապահով հաստատաքայլ։ Ձիավաճառանոցն համոզուեցանք որ Հայ ձիավաճառք իրենց Եւրոպական եղբայրակիցներէն բանի մը մէջ վար չեն մնար՝ գիտնալով եւ գործածելով "արուեստին ամէն գաղտնիքները." շատ յարմար կը գործածեն զառիկն ու անգրուեղն (gingembre, ջէնճէպիլ) եւ շատ լաւ յղկելով ծեր ձիոց ատամունքը։

Մեր ի Բաբերդ արգիլուիլն ամսոյն 4ին էր. արդ հազիւ սեպտեմբեր 29ին ստացանք կրկին մեր թղթերն։ Հասան-Հարէի կերպական եւ որոշ հրահանգներ առած ըլլալով աւագ վէզիրէն՝ ալ չընդդիմացաւ մեր ճամբայ ելլելուն, եւ իբր հաճոյակատար կամարարութիւն յայն անգամ հասցուց որ չգլացաւ տալ մեզի պօ-յրու-լտու մը, զոր խնդրած էր մեր հիւպատը։ Վաղը պիտի թողունք Կարին առանց ցաւի եւ պիտի շարունակենք մեր ուղեւորութիւնը։

ԺԷՈՐԺ ՓԻՍՈՆ



## Դ.

# ԿԱՐՆԷՆ ՉԱՆԼԸ-ՔԻԼԻՍԷ

*Չանլը-քիլիսէ, 4 Նոյեմբեր 1890:*

Վերջապէս Հոկտեմբերի 3ին՝ երեք շաբթէն աւելի բանի ի Կարին մնալէն ետքը՝ կրնանք վերստին շարունակել մեր ուղեւորութիւնն ի Պարսկաստան:

Պարսկաստան երթալու ամէնէն կարճ ճամբան է Պայազիտինը, որ է նաեւ Դավրէժէն եկած կարաւանաց ուղին. բայց նաեւ այս ճամբան ամէնէն քիչ հետաքրքրականն է: Ի մեծ զարմանս վալիին՝ մենք ընտրեցինք այնպիսի ուղի մը՝ որով կ'անցնինք Մուշ, Բաղէշ, Վան եւ Խոյ. ասով առիթ կ'ունենանք մէկ կողմանէ ճանչնալու Բաղէշի վալին՝ որուն վրայ լաւ կը խօսուի, եւ միւս կողմանէ Վանայ վալին՝ որուն վրայ գէշ կը խօսուի: Ասով մենք անձամբ կրնանք դատաստան ընել, որ Արեւելից մէջ անհրաժեշտ կարեւոր է. վասն զի սուտն շատ ծաղկած է կրօնից այս աշխարհին մէջ, թէեւ ըսած է Մահմէտ "ճշմարտութիւնը ստութեան պատմուճանաւ մի սքողէք. մի ծածկէք ճշմարտութիւնն երբ ծանօթ է ձեզ:"

Ժամն իբր 10ին ճամբայ կ'ելլենք: Մեր ուղեւորութեան մէջ դիւրաւ յառաջադէմ նկրտելու համար գնեցինք երկու ձի ալ, որով ութ եղաւ մեր հեծելախմբին ձիաթիւն. եւ Քրդաց "անխոհեմութեանց" դէմ մեր վրանները պաշտպանելու առինք երկու գամփռ, որոնց սեւացուցուկ դնչէն դուրս ցցուած վեհատեսիլ ժանիքն լաւ պահպանութիւն եւ լաւագոյն եւս ազդեցութիւն կ'ընեն. սակայն շատ մեծ գլխացաւ է զասոնք զսպել կրթել եւ պաշտպանել զանոնք գիւղերու շանց դէմ, որ երբեմն նաեւ մարդկան երկիւղաբեր են: Ծանօթ

է որ շունք Արեւելից մէջ հասարակաց անսիրելութեան առարկայ են, ուստի մեր շները փայփայել չենք կրնար առանց ամենուն զարմանաց նիւթ ըլլալու:

Քաղաքէն ելանք՝ ընկերակցութեամբ քանի մը բարեկամաց, մեր ուղեկցաց, երկու աշխարհապահ ոստիկանաց, չէրքէս ենթասպայի եւ պարզ ոստիկանի մը: Ասոնք մինչեւ Փալան-Տէօքէն պիտի ընկերանան մեզի հրամանաւ վալիին, որպէս զի ապահով ըլլան որ ոչ յառաջագիծ եւ ոչ լուսանկար կ'առնունք այն լերան վրայ շինելու ձեռնարկած ամրութեան, որուն շինութիւնն՝ անցողակի ըսենք՝ անհրաժեշտ էր Կարնոյ պաշտպանութեան համար: Քաղքին դռնէն դուրս ելլելուն արդէն կը սկսինք ելլել բարձրանալ դէպ ի Փալան-Տէօքէն. Ճամբան շատ յոռի է, բայց որուն տեղ պիտի շինուի արդէն շուտով պատերազմագիտական ուղի մը: Կարնէն 1000 մեդր բարձրութեան մէջ կանգնած այս կրճանձուկքն հանելու զառիվեր վերելքը շատ դժնդակ է. չէրքէս ենթասպան երբեմն երբեմն բուռ մը հող կուլ տալ կու տայ իր ձիուն որ չիյնայ շնչասպառ: Վերջին օրերուն տեղացած ձիւնն արեւու ջերմութենէն հալած ըլլալով՝ ձեան հետք գտնել չենք կրնար: Վերջապէս երբ այս բարձունքէն իջանք՝ որ աւելի զառիթափ է, դադար առինք կերակուր ուտելու. հոն՝ ո՛ւր որչափ հեռուն որ աչք ու տեսողութիւն կը զօրէ, ոչ տուն կը նշմարուի եւ ոչ ծառ. առուակաց ափանց մօտ գոյզնադալար կանաչութիւն մը կը բուսնի, բայց այլուր ամէն տեղ՝ թէ հեռուն անհետ կորսուող լերանց գանգրաձեւ խոպոպեաց եւ թէ ժայռերու ու կոպիճներու մէջ՝ խոտը կը դեղնի չորցած գօսացած: Փալան-Տէօքէնէն անդին ա՛լ չկայ ճամբայ. այլ կը հետեւինք նրբակածան արահետի մը՝ լեռներ ու ձորեր կտրելով անցնելով, արահետի մը՝ որ տեղ տեղ գրեթէ բոլորովին անկոխ անդնաց է: Ժամը 6ը քառորդ

անցած կը հասնինք Մասրակ քրդաբնակ գիւղը, ուր կ'ուղղենք մեր վրանները: Ոստիկանաց հրամանաւ գիւղապետն իր տան տանեաց վրայէն բարձրաձայն կը գոչէ որ մենք գաղղիացի ենք, եւ գնդակահար պիտի տապալենք ով ալ որ համարձակի մեր վրանը մերձենալ գիշերայն:

Գիշերը ցուրտ է. մերձակայ առուակը մէկ սանտիմեթր թանձրութեամբ սառոյց կապած գտանք: Հոս 2000 մեթր բարձրութեան մէջ ենք, եւ մինչեւ Զանլը-քիլիսէ պիտի չիջնանք աւելի վար: Երկրին տեսքը դեռ եւս նոյն է, ոչ ծառ կայ, ոչ մշակութիւն եւ ոչ տուն. սակայն սակաւատարած բուսաբեր գետին ալ կայ այս տեղերն՝ օդոյ չորութենէն խորխոլած պատառուած շատ տեղ: Ճամբորդի մ'ընկերակցութեամբ՝ որ յուղկահարաց երկիւղէն մեր ցրկիճներուն պաշտպանութեան ներքեւ ապաստանած է, կը հասնինք կրճակապան մը, ուր քանի մ'ամիս յառաջ կարաւան մը յարձակում էր կրած, եւ՝ ինչպէս ինքնին կը հասկցուի՝ կողոպտուած. քանի մը վիմաբեկորք կը նշանակեն մեզ այն տեղն ուր կը հանգչին երեք զոհերն, այսինքն՝ անոնք որ դիմադրել համարձակած էին: Մեր ոստիկանք մտայոյզ հոգի մէջ են, վասն զի լերան մը գագաթն հեծեալ մը տեսած կը կարծեն, եւ հեծեալ մ'այս կողմերն մտահոգութեան նիւթ է: Մենք մեր դիտակներով բան մը չենք տեսներ, բայց միայն արեւակէզ ժայռեր որ իրենց անվրդով խաղաղութեան մէջ կը նիրհեն լռին մենակեաց: Սակայն ապահովութեան համար կը սպասենք որ մեր յետսամնաց աղխ ու կազմածքն ալ հասնի: Այս ժամանակ թշուառ ողորմելի մը կը հասնի յանկարծ հետիոտն. ոստիկանք զինքն յուղկահար աւազակաց լրտես համարելով՝ չարագան գանակոծ կ'ընեն, եւ հազիւ մեր միջամտելով թող կու տան: Հազիւ ելանք կրճէն՝ իմ ձիս, զոր խածեր էր Գէորգի ձին, կրկին աքացի արձակեց եւ զարկաւ Գէորգի սրու-

նից ոլոքին։ Այս երաշտին ու ամայի տեղն՝ Գու-
րուճագ (անջրդի) անուն՝ ակնաղբիւր մը, առուակ
մ'իսկ չկայ՝ երկու ժամու չափ անջրպետի մէջ շուր-
ջանակի։ Վէրքը ծանր էր եւ ցաւալից, զոր առ ժամն
կապեցինք քափրախառն գինւոյ պատանաւ։ Ապա
կրկին ճամբայ ինկանք, եւ այս շատ ուրախացուց
ոստիկաններն, ջորեպանքն ու մեր ուղեկից ընկերը,
որ զարհուրած էին լսելով մեր այնպիսի զարհու-
րելի տեղ մը գիշերել ուզելը։ Այս պատահարն
պատճառ եղաւ յետոյ որ երկար շաբաթներ ստի-
պուեցանք մնալ ի Զանլը-քիլիսէ՝ Հայոց Ս. Կա-
րապետի վանքը, եւ որ մեր ուղեւորութեան համար
շատ դէջ արդիւնք ունեցաւ։ Վերջապէս կը հաս-
նինք Մամունէն-քէօմի գեղը. ժամն է 4 ու կէս,
իսկ Մատրակէն ելած էինք 7ը քառորդ անցած։

Մամունէն-քէօմի յոռի գիւղ մըն է 30 տնէ.
ասկէ հազիւ օրագնայ մը ճամբայ կայ՝ հասնելու
Խնուս ուր վաճառանոց մը կը գտնուի, եւ որ 4—
5000 բնակչօք քաղաքիկ մըն է։ Գէորգին ոտից
վէրքը գէշցած ըլլալով՝ դարձեալ ճամբայ ելանք
ժամն 9 ու կէսին։ Դժբախտաբար ճամբան կ'անցնի
ջրվէժանման ժայռերու քարվազքէ մը. հազիւ թէ
կոպճուտ սար մը կ'ելլես, պէտք կ'ըլլայ զառիթափ
մ'իջնալ աւելի սեպ. ձիերը փառակաբեկ եղած կը
հեւան ու կը թասեն. քայլ առ քայլ կը շարժին
յառաջ՝ բայց ի հարկէ ոչ առանց ցնցուելու, եւ
մեր խեղճ հիւանդը շատ կը կրէ։ Սակայն քառորդ
մը ճամբայ այսպէս երթալէն ետքը՝ կը սկսի ուղին
անցնիլ անուշաբոյր խոտերով եւ կաղնեայ ու փար-
դաթ փոց մայառուաքներով ծածկուած լերանց կո-
ղամիջէն. աստ անդ կը տեսնենք ծաղիկներ, եւ այս
աչայ վայելք մըն է ճշմարտիւ։ Դալարագգեայ այս
անկիւնէն չելած տեղւոյն ծաղիկներէն երկը-
գունեան գլխանշան-պսակ կը յօրինենք մեր ձիոց։
Կ'իջնանք այնուհետեւ Պաշ-Քէօյի ձորակն, ուստի
կը նշմարուի Խնուսի լեռնադաշտակն, բուսաբեր

հողի անսպառ պատկեր մը՝ զոր լեռնաբոլորակ մը կը փակէ չորս կողմէն. կ'անցնինք Մկնկէտ գեղեցկատեսիլ գիւղակէն, որուն քովը կը հանգչին հայկական հին եկեղեցւոյ մը փլատակք՝ չորս կողմն բոլորած հնադարեան քանդակեալ մահարձաններով. վերջապէս ժամը 3ին Խնուս կը հասնինք: Շատ մտերմական այցելութիւն մ'ըրին մեզ գայմագամն ու զինուորական մեծերը, որոնց այցելութեան երթալ կը փութանք ի փոխարէն: Մինչեւ մեր վրանին մէջն իսկ հովը փոշի կը յարուցանէ կուրցընելու չափ:

Խնուս մեր տեսած քաղաքաց ամէնէն հետաքրքրականն է: Շինուած ժայռահերձ պատռուածքի մը մէջ, ուրկէ գետ մը կը հոսի սուրալով, կ'երկարի կը սփռի քաղաքն գետն ի խոնարհ՝ սեղմուած ամփոփուած ուղղաբերձ ժայռորմոց մէջ՝ կարծես անզգոյշ հայեցուածքներէ թագչելու համար: Սակայն նորաշէն քանի մը տներ կառուցուած են բուն լեռնադաշտակին վրան, եւ կ'իշխեն քաղաքին մի միակ երկարաձիգ փողոցին վրայ: Խոր է այս ժայռահերձքն եւ արեւելքէն արեւմուտք կ'երկարի կ'երթայ շատ հեռուն՝ բիւր ծուռումուռ ըստ հեշտի գալարուած մանուածապատներով, եւ երբեմն երբեմն նաեւ երկրորդական պատռուածքներ կազմելով: Հին բերդին տեղը կը ցուցընեն աւերակ միջնաբերդ մը, աւերած խաթարած աշտարակ մը եւ թանձրապարիսպ որմածներու բեկորքն՝ եկեղեցւոյ սեանց պէս ուղղաբերձ կանգնած. սակայն այս ամէնը շատ փոքրաշէն է ժայռերու վիթխարի շարքերուն համեմատութեամբ: Ջաւիթափ ճամբէ մը կ'երթանք շուկան, ուր քանի մը դահեկանի մանր բաներ գնելովն իսկ արդէն կարեւոր յաճախորդ մ'եղած ենք. վաճառականք՝ կծկած իրենց մանրանկարէն կրպակաց մէջ՝ նարկիլէ կը ծխեն. սակայն՝ որ ցանցառադէպ բան է՝ չեն դարձըներ համրիչ: Քանի մը վայրկեան ալ կ'երթանք տներուն

երկայնութեամբն՝ մերթ ընդ մերթ տեսնելով նաեւ սիրուն դէմքեր, եւ կը հանինք քաղաքին ծայրը։ Թերեւս հոս է երջանկութիւնը, կ'ըսեմ մեր թարգմանին, խրատ տալով որ դադար ընէ ժայռերուն տակը փորուած այրի մը մէջ. բայց մեր երիտասարդ հայն ուղեւորութեանց անակնկալ յանկարծադէպն աւելի կ'ընտրէ նախամեծար։ Եւ սակայն հոս կայ, կ'ըսեն, անգիւտ ձուկ մը որ սրտին հիւանդութիւնքը կը բուժէ . . . ։ Արաբացի մը՝ այսօր մաքսապետ՝ այս նորասքանչ ձկան զարմանալեաց պատմողն է, որ երկարատեւ ճամբորդութեանց մէջ ոչ թէ սրտի, այլ ստամոքսի հիւանդութեամբ տխրացած էր, եւ հոս՝ ի Խնուս՝ առողջացած խմելով հանքային ջուր մը, զոր ինքը գտած էր քաղաքին մօտերը։ Ի շնորհակալութիւն իւր առողջութեան ձկնարան մը շինած է հոն պարսպապատ, որ բնակիչք՝ մեծաւ մասամբ կանայք՝ կ'երթան ջուր խմելու եւ լոգանալու անգամ. ի հարկէ կը փութայ նոյնն զմեզ հոն տանելու։ Այս ջուրն՝ որ ալկալեան ածխաթթու-ող (carbonate alcalin) կը բովանդակէ, շատ գազախառն է։ Շնորհաւորելով արաբացւոյն այս իւր նախաձեռնութեան համար՝ քանի մը պուտ կը խմենք ջրէն. այսչափն իսկ բաւական է որ այսուհետեւ զգալապէս աճի ջրոյն գործածութիւնը, այնչափ անժխտելի է հոս Եւրոպացւոյ կարծիքն բժշկական կամ գիտնական նիւթոց մէջ։ Հոս ալ՝ ինչպէս նաեւ յառաջները՝ բազմութիւն մը հիւանդաց կը դիմէ մեր վրանը՝ մեծաւ մասամբ ակնացաւոտք։ Փորձ բժիշկ մը շատ գործք կը գտնէ հոս՝ բուժելու ակնագօղի, աչաց եղջերատապի եւ ծիածանի բորբոքումներ, եւ աչքի վարագոյրները վերահատելու։ Հետաքրքիր բազմութիւն մ'ալ մեր զէնքերը տեսնել կ'ուզէ եւ գինը կը հարցնեն. շատերը մեր ցրկիճներուն փոխարէն ձի մը տալ կ'առաջարկեն։ "Այսպիսի ցրկիճով, կ'ըսեն, ոչ կնոջ պէտք կայ, ոչ հօր, ոչ մօր, ոչ բարեկամի,

ամէն բանի բաւական է այն։» Այս զարմացման միամիտ բացատրութիւնը շատ անգամ կը լսենք։

Կրնաք երեւակայել որ քաղաքին լուսանկարն առնուլ չզանդաղեցանք։ Հազիւ ուղղեցինք մեր գործին՝ պէտք եղաւ լուսանկարն առնուլ գայմագամին եւ շատ մը մեծ խոյրերու։ Երկրորդ օրն՝ երբ կ'ուզէինք ծախացընել մեր հաւաքածոյքը, գայմագամն իմացընել տուաւ որ հեռագիր հրաման ստացեր է Կարնոյ վալիէն արգելուլ մեզի լուսանկար առնուլը։ Այս բարի վալին դեռ չէ մոռցած զմեզ, շնորհակալ ենք իր մեր վրայ դրած ծանրակշռութեան համար։ Ուրիշ զբաղում եւ ուսումնասիրութեան նիւթ շատ գտանք քաղաքիս մէջ այն չորս օրն որ մնալ ստիպուեցանք, որպէս զի Գէորգին սրունից վէրքը սպիանայ։ Նախ կ'ընդունէինք մեզի եղած հրաւէրները ճաշի երթալու՝ ի փոխարէն մեր առած լուսանկարներուն։ Ըստ տաճկական օրինի ճաշ մը սովորական բան չէ։ Կերակրէն յառաջ սուրճի փոքր բաժակիկ մը կու գայ, ապա թէյի շատ մը գաւաթներ. վասն զի այնուհետեւ ալ չի խմուիր բան մը։ Կը նստինք յետոյ գորգապատ եւ բարձկնեարներով կահաւորուած տեղ մը՝ ծալապատիկ՝ եւ պղնձեայ անագուած բոլորշի սեղանի մը բոլորտիքն, զոր կը բանայ փոքր նեցուկ մը։ Մեզի մասնաւոր պատիւ մ'ըրած են սկաւառակ դնելով. մեզմէ զատ ոչ ոք կը գործածէ զայն. ամէնն ալ պնակէն կը քաղեն կերակուրը մատով կամ դգալով՝ եթէ լոյծ է։ Խորտիկացուցակը չեմ նկարագրեր հոս. բաւ է ըսելը՝ թէ շատ քիչ կերանք։ Աւելի անմոռնդ էր խօսակցութիւնը, որ պիտի երկարէր սակաւին, եթէ չյայտնէինք մեր փափաքն ձիով շրջագայութիւն մ'ընելու։ Խնուսի գետին ճեպանցոյց-ջուրց հեղեղատին մէջ մեր ըրած շրջագայութեամբ քարածխոյ անբաւ խաւեր գտանք. գայմագամն՝ լսելով զայս՝ շատ գոհ կ'երեւար. սակայն ամենայն պատճառ կայ պնդելու՝ թէ Խնուս փոքր քաղաքին

մէջ դեռ երկար ժամանակ աթար պիտի վառեն փոխանակ քարածխոյ:

Հոկտեմբեր 10ին, երբ Գէորգի ոտքը լաւցած կ'երեւար, ճամբայ ելանք Խնուսէն՝ ընկերակցութեամբ երկու նոր աշխարհապահ ոստիկանաց որ առաջնորդ պիտի ըլլան մեզ մինչեւ Մուշ՝ անցնելով Վարդոյ եւ Սուրբ-Կարապետ վանքը, զոր միտք ունինք տեսնել: Ուղին անհարթ է եւ ոչ ալ շատ դիւրագնաց: Սաստկաշունչ հովի եւ յորդառատ անձրեւի տակ կը կտրենք կ'անցնինք շատ մը մանրակիրճ լերանցամէջքներէ, եւ կը հասնինք քրտաբնակ Սեւիկ գիւղակը, սակայն՝ որ անդիւրն է, գիւղացիք կը վախնան՝ թէ պիտի չվճարենք իրենց: Մեծ դժուարութեամբ կրցանք հոս խումբ մը լուսանկարել: Գիւղին կանանց մեծագոյն մասը քթին մէկ ունչին վրայ մետաղեայ զարդ մ'ունին կախած, զոր Հայք քթէ օղ կ'անուանեն: Իրիկունը ժամ հնգին դադար կ'ընենք Քունաւ գիւղը, որ բաւական նկարագեղ հովտիկի մը մէջ կանգնած է՝ միայն միայնակ՝ երկու լերանց շղթայից մէջ:

Մեր վիրաւորը չյոգնեցնելու համար օր մը կեցանք ի Քունաւ: Լսած էինք որ այս քրդաբնակ գիւղին քով հետաքրքրական անձաւ մը կայ. բայց երբ ուզեցինք տեսնել՝ ոչ ոք առաջնորդել յանձն առաւ՝ պատրուակելով թէ կառավարութեան է ան եւ մենք օտարական ենք: Նաեւ ոստիկանաց միջամտութիւնը չկրցաւ համոզցընել զանոնք: Ուստի մենք առանձին ճամբայ ինկանք՝ ըստ բախտի գտնելու: Քառորդ մ'ետքը տասնեակ մը քրդեր վրայ հասան որ խորհրդածելով եւ տեսնելով որ արդէն արահետքը գտած ենք ճշդիւ, զիջան մեզի ընկերանալու: Քունաւի քարանձաւը կազմուած է երկու անցքերէ որ ծակուած պատռուած են ուղղաբերձ ժայռերու ոտքը. անցքերէն մին 6—8 մեդր լայն գետ մը կը հասցընէ, իսկ միւսն՝ աւելի բարձրադիր՝ կը կցի առաջնոյն իբր 150 մեդր անդին. եւ

յատակն անասնոց աղբերէ թանձր խաւ մը պատած է։ Մտանք այս անցքը եւ լապտերի լուսով ծակ մը գտնելով՝ ներս սպրդեցանք եւ մտանք ստորերկրեայ ներքնուղեաց շարք մը՝ պէսպէս ձեւերով կազմուած, որուն որմերը կրային սպիտակ խաւով մը ծածկուած են, եւ ուր տեղ տեղ հազիւ սողալով կը յառաջանայինք։ Մեր առաջնորդներն ըսին՝ թէ ուրիշ անձաւ մ'ալ կայ, բայց անհնար է մտնել, եւ ցուցուցին մեզ ծակ մը դուրս ցցուած հակած ժայռերու մէջ. ետքէն իմացանք որ ուրիշ աւելի մեծ, լայնուղի անցքերով անձաւ մ'ալ կայ հոն, ուր բնակութեան հետքեր եւ հին արձանագրութիւնք կը տեսնուին. եւ ըսին՝ թէ Քրդեր ծածկեցին մեզմէ նոյն այրը, որպէս զի չըլլայ թէ գտնենք իրենց հոն պահուած բազմութիւն մը գողունի իրեր։ Յետս չդարձած՝ լուսանկար մ'առինք այրին Քրդաց առջեւ, որ զարմացած կը նայէին խաւարին սենեկի աղօտապակին։ Հետաքրքրութիւննին զարթնլով՝ աւելի հաղորդական եղան եւ շատխօս. իսկ երբ մեր ոսկի հրացանը փոխ առինք՝ ա՛լ բոլորովին բարեկամացանք։ Մեր վրայ ունեցած այս վստահութեամբն հրաւիրուեցանք տները, եւ շատ յատկատեսիլ նկարագրական խմբի մը լուսանկարն առնուլ կրցանք։ Քրդաց տները՝ Հայոց տներէն քիչ տարբեր, — խօսքս գիւղերու տանց վրայ է, — թանձր եւ ոչ շատ բարձր պատեր ունին, որ շինուած են մեծայաղթ անտաշ դաշտավիմի տեսակ մը քարերէ, ցեխով մածուցուած իրարու, եւ դռնէն ուրիշ ծակ չունին։ Լոյսը կ'իջնայ երդիքէ մը տանեաց վրայ, որուն ուղղաձիգ գերանաց վրայ յեցած մարդակները ծածկուած են ոստախրձերով եւ անոր վրայ հողոյ թանձր խաւով մը։ Յետսակողմն է յած դուռը, փոքր նրբանցք մը՝ որուն աջ կողմը կը բացուի տան գրեթէ կէսը գրաւող ախոռատանը, ձախ կողմն ալ պաշարեղինաց մթերման տեղն է, իսկ ներքսակողմն է բնակութեան խուցը։ Գետնին մէջ՝ որ պարզ հող

է ծեծուած պնդացուած, փորուած է 70 սանդի-մեդր տրամագծով եւ 1 մեդր խորութեամբ թոնիրը. ասոր չորս կողման վրայ կ'եփեն լօշերը՝ հայոփ նուրբ խաւ մը նետելով սփռելով անոր կողին վրայ եւ որ հոն կը կպչի կը կենայ. հոս նաեւ կու գան տղաք՝ որ գրեթէ մինչեւ ութերորդ տարին մերկ կը շրջին, ջերմացընելու ցրտութենէ բրտացած իրենց սրունները. ասոր չորս կողմը նաեւ կանայք նստած կծկած կը զբաղին իրենց երկրորդական գործոց: Անկողնոյ վերմակներ, խեցեայ մեծ անօթներ կաթի համար, ոչխարենւոյ տիկ մը կախուած երկու թելէ՝ կարագ պատրաստելու, քանի մը մանր գործիներ, երբեմն նաեւ անարուեստ դարան կամ արկղ մը, ահա բոլոր կահ կարասիքը: Մոռցայ ըսելու կրակետղը՝ նեղ բայց բաւական բարձր, ուր ձմեռ ատեն կը դիզեն աթարը: Քանի մը տներ կանանց յատուկ ուրոյն սենեակ մ'ալ ունին: Ամէն գիւղ կայ տուն մը՝ տեսակ մը խան, ուր ճամբորդներն եւ իրենց ձիերը կրնան իջեւանիլ. այս խօսարանը կը յաճախեն նորադէպ լրոց հետաքրքիր գիւղացիք. ուր լուրերը կ'եռան:

Քունաւէն մինչեւ Պունտէմիրան ութ ժամ է՝ մեր բեռնաբարձ ձիոց քայլով: Նախաճաշ ըրինք ի Վարդոյ, ուր՝ թէպէտ Քիբերդի աշխարհացոյցը Վարդոյ-Գալէ անունը կու տայ, բայց բերդի տուներն անգամ չկայ: Տեղւոյն շուկայն է երեք չորս խանութ Հայոց, եւ այս օր կիրակի ըլլալով՝ կէս ժամ աշխատելէն ետքը հազիւ կրցանք բանալ տալ մեզի համար: Հոս ամէն տեղէ աւելի հետաքրքրութեան առարկայ եղած ենք բնակչաց. հարիւր հոգիէն աւելի անձանց շրջանակ մը պատած է զմեզ, եւ ոստիկանք հազիւ կրնան հեռու պահել մեր մօտէն: Վարդոյ՝ որ գայմագամ ունի, դաշտավայրի մը վերջին ծայրն է կանգնած, որ բաւական մշակուած է, եւ ուր ցանուած սփռուած են շատ մը գիւղեր: Մտադիր կ'ընենք որ քաղաքներն ու գե-

ղերն իսկ դաշտավայրաց ընդարձակութեան համեմատ աւելի կամ նուազ կարեւորութիւն ունին, որ սակայն բնական է. դարձեալ մտադիր ըլլալ պէտք է որ այս դաշտավայրերը կամ մանաւանդ լեռնադաշտերը՝ — նկատելով տեղւոյն բարձրութիւնն ու գետնոյն ձեւը, — իրարու շատ նմանին երեւութով՝ նոյնպիսի լերանց բոլորակէ պատուած, եւ նման ցուբենաքեր արմտեօք: Կարնոյ դաշտը նման է Մշոյ դաշտին, ինչպէս Բաբերդինը՝ Խնուսին կամ Վարդոյի դաշտավայրն Պուլանէմիրանին: Վարդոյէն Զանլը միայն մէկ ճամբայ կայ արեւմուտքէն, — պէտք իսկ չկայ յիշեցընելու որ Տաճկաստանի այս կողմերը ճամբայ ըսելով պէտք է հասկընալ նրբակածան արահետ մը՝ հազիւ թէ բացուած լերանց ու ձորոց մէջէն, եւ բեռնաբարձ ձիոց համար հազիւ կոխուն. — հոս՝ կը կրկնենք՝ մի միակ ուղի կայ, որմէ եւ ոչ մէկ ճանապարհորդ մ'անցնիլ երթալ կը համարձակի. վասն զի կ'անցնի ճամբան երկրէ մը, ուր՝ որչափ կ'երեւայ՝ յելուզակ հուղկահարաց մեծ բազմութիւն մ'ապաւինած է անմուտ անմատոյց խոռոչներու մէջ: Ոստիկանք կը յայտարարեն թէ այլ եւս չեն ընկերանար՝ եթէ ստիպենք զիրենք անկէ երթալու: Բայց արդէն լսելով որ շատ դժուարակոխ է ճամբան՝ ախորժակ չունինք նոյնէն երթալու. պէտք է բատ կարի զգուշանանք որ չցնցուի մեր հիւանդը: Վարդոյի լեռնադաշտին վերջնածայրը կը գտնենք ծօծ մարգագետին մը, այսինքն գալաբաբոյս եղտիւր մը ճախճախուտ. որպէս զի չըլլայ թէ խրինք՝ բոլորեցանք եղտիւրի չորս կողմը գերանդաւորաց ցուցուցած ճամբով: Փորձառութիւնն զգոյշ ըրած էր. Քունաւի մօտ խրեցաւ մեր ձիերէն մէկն այսպիսի տեղ մը՝ որ սակայն 45 աստիճանէն աւելի կորութեամբ հակած էր, եւ մեծ ջանիւ հազիւ կրցանք հանել: Պուլանէմիրանն ոռոգող գետը պատուած է բաւական մեծ ծառերով. այս տեղն է մեզ բանակելու յարմարագոյնը: Գիւղապետն հոն

չէր, ուստի դունէ դուռ ինկանք պաշարեղէն փնտռելով. ամէն տեղ անփոփոխ նոյն բառը կը հնչէ՝ «չի կայ.» ամէն անգամ վախ ունէին թէ պիտի չվճարենք։ Այն ատեն գիւղացւոյ մը յանձնեցինք մեզի պէտք եղածն հայթայթել. եւ որովհետեւ սպառնացանք իրեն՝ սկսաւ վազել հայաբնակ գիւղն ամենայն զօրութեամբ գոչելով. «Հաւկիթ, կաթ, սեր, հաց. ո՞վ ունի ստակով տալիք։» Սակայն չկայ պատասխան։ Համբերութիւնս հատնելով՝ ձեռք առի գաւազանս՝ ընտիր ֆըըղած մը ձիագետնոյ մորթոյ մէջ ձեւուած։ Ամէն մէկը բերաւ երկու երեք հաւկիթ, քիչ մը կաթ, լաւաշ մը, քիչ՝ որչափ հնար էր. բոլորն ալ քովէքով բերելով հազիւ կը բաւէր. վճարեցի եւ մեր վրանը դարձայ։ Երկու ժամ անցած էր այս չափն ստանալու համար. սակայն քանի մը րոպէ ետքը՝ բազմաթիւ Հայեր բերին հաւկիթ, կաթ ու սեր եւ կ'առաջարկէին գնել։ Վճարած էինք, եւ պաշարեղէնք այժմ ամէն խորշէ կ'ելլէին կը յորդէին՝ ինչպէս իմ սիրուն հայրենեաց Պուրկոնի մէջ խղունջները (escargot) կը յորդեն անձրեւէն ետքը։ Տեղն է ըսելու թէ այս գիւղացիք արդեամբք ուրիշ ճամբորդ չեն ճանչնար՝ բայց տաճիկ զինուոր, ոստիկան եւ պաշտօնակալ, որոնք՝ աննշան բացառութեամբ՝ չեն վճարեր առածնին, բայց եթէ թշնամանք ու հարուածներ։

Պունտէմիրանի դաշտավայրին միւս կողմն՝ անցնելով Պասիքան գիւղն եւ Զանլըի ճամբան մտնելով՝ կը նշմարենք եօթ մաքուր հագուած եւ սպառազէն հեծելոց խումբ մը։ — Քրդեր են՝ որ գիւղէ գիւղ կ'երթան հարկ հաւաքելու, կ'ըսեն ոստիկանք։ Քիչ մը մտահոգ՝ ճնշեցի ձիս եւ հասայ այս նորանշան հարկահանաց, հետս կու գար մեր թարգմանն՝ սիգապանծ ցուցընելով միշտ իւր ցըրկիճը։ Միտ դնելու է որ հայ է մեր թարգմանն, ուստի միայն մեր շնորհիւն է որ ցըկիճ մը կը կրէ. այս զէնքը խստիւ արգիլուած է իւր ցեղակցաց։

Խօսակցութիւն մը կը սկսի. հազար ու մէկ հարցմունք կ'ըլլան. «Ո՞վ էք. ուստի՞ կու գաք. ո՞ւր կ'երթաք. ի՞նչու կը ճամբորդէք այս կողմերը» եւն. Մէկը կը հարցնէ Մեսրոպեանին թէ Գաղղիացիք Քրդե՞րն աւելի կը սիրեն թէ Հայերը նախամեծար կ'ընտրեն: Փոքրիկ Մեսրոպեանը հպարտութեամբ կը պատասխանէ. «Գաղղիացիք աշխարհիս ամենաքաջ ազգն են. իրենց համար առաջին առաքինութիւնն է քաջութիւնը: Քրդերը կը սիրեն, վասն զի քաջ են. երբեք պիտի չսիրեն վատ Հայեր, բայց երբ անոնք ալ ձեզի պէս քաջ ըլլան:» Այս պերճահրնչիւն պատասխանը Քրդաց համակրութիւնը կը շահի մեզ, որ կը հրաւիրեն իրենց Պաղըր գիւղն հիւր երթալու: Երեք ժամու շրջան մ'ըլլալով այս՝ չենք կրնար ասոր վրայ մտածել: Երբ ճամբան երկփեռեկեցաւ՝ բաժնուեցանք իրարմէ: Երբ արդէն հեռացած էին, ըսաւ ոստիկաններէն մին՝ թէ աւազակ էին անոնք, որոնց պետը՝ միականի մը՝ ճանչցած էր ինքը. եւ թէ այս աւազակներն իրենց քով հրապուրել տանիլ կ'ուզէին զմեզ՝ որպէս զի կողոպտեն: Յետոյ պատմեց՝ կասկածոտ ձայնով մը՝ թէ քուրդ մը խոտորած բաժնուած էր խմբէն որպէս զի տեղեկանայ իրմէ՝ թէ ո՞ւր էր մեր դրամն եւ թէ շատ ունէ՞նք արդեօք, ի՞նչ կար մեր պայուսակաց մէջ եւ այլ նշանակալից տեղեկութիւններ: Յեղուղակ հուղկահար մ'որ իրեն կարեւոր տեղեկութիւնքն աշխարհապահ ոստիկանէ մը կը հարցնէ կ'առնու ճամբորդներն կողոպտելու տեւադերծ, չէ՞ միթէ սքանչելի երեւոյթ մը կամ բուն արեւելեան: Նախաճաշիկնիս ի Սէլիխան ըրինք. գիւղին կէսը քուրդ, կէսը հայ է, որոնք նոր կողոպտուած էին Քրդերէն, այսինքն՝ Քրդերը միայն Հայոց իրերը գողցած էին՝ եւ ոչ մի գլուխ անասուն թողլով: Սէլիխանէն որ ելանք՝ խոստովանեցան ոստիկանք թէ այլ եւս ապահով չեն ճանչնար ճամբան: Առաջնորդ մը պէտք էր մեզի. բայց այս դիւրին բան է: Ոստիկանն հար-

ցուց Հայու մը. «Գիտե՞ս Ձանըը տանող ճամբան:» — «Այո:» — «Ուրեմն առաջնորդէ զմեզ:» — «Չեմ կրնար, ես . . . :» — Հինգ կամ վեց խաչբաղանի հարուած իջաւ, եւ թշուառն՝ մերկագլուխ արտօսր աչքին՝ մեր առջեւն ինկաւ առաջնորդելու: Եւ այսպիսի գործք մը բոլորովին բնական կ'երեւար թէ՛ Հայոց եւ թէ՛ մեր ոստիկանին: Հետ զհետէ կը յաջորդեն բազմաթիւ կրճեր՝ 2,200 մինչեւ 2,400 մեդր բարձրութեամբ, եւ ապա արդէն կը հանինք վանքին հողերը Հաւատամ լերան կրճին մօտ: Երկու ժամ ետքը վանքն ենք:



## Ե.

# ՍՈՒՐԲ ԿԱՐԱՊԵՏ ՎԱՆՔԸ

*Մուշ, 12 Նոյեմբեր 1890:*

Ահա արդէն հայ վանքի մը մէջ զետեղուած ենք: Տուին մեզի խուց մ'որուն բոլոր կահ-կարասիքն էր հին գորգ եւ մեծ օրմնադարան մը խցին մէկ կողմն. պատերը մէկուկէս մեդր թանձր, յատակամածն՝ կամարաձեւ կրածեփ, ցած դուռ եւ փոքրիկ պատուհան երկաթի ճաղերով, կրակարան մը՝ մեդր մը բարձր գետնէն, ահա ամէնն որ այս կողման վանքի մը խցկան գաղափարին բաւական ճիշդ կը համապատասխանէ: Ուղեւորութեան ճգանց պատճառաւ զայրացած էր Գէորգայ վէրքը, ուստի երկարժամանակեայ միջոց մը մնալու ստիպուած ենք այս տխուր բնակութեան մէջ՝ ուր ուրիշ զբաղում չկայ խ(թափեցուցիչ՝ (բաց ի որսեկէն եւ ձիով եղած արշաւանքներէն,) բայց միայն զննել Մուշի մենաձեւ դաշտավայրը՝ զոր երկու կը բաժնէ Արածանի եւ որ կը պատի բարձրաբերձ

լեռներով որոց գագաթունք երկնից կապուտին մէջ դուրս կը ցցուին կողմնակի տեսլեամբ։ Այս երկար միջոցին առիթ ունեցայ ի մերձուստ զննելու վանքն ու բնակիչքը. եւ որովհետեւ վանքերն Հայոց մէջ մեծ դեր կը կատարեն եւ Սուրբ Կարապետ ամենակարեւոր եւ ամէնէն աւելի ուխտաւորաշատ վանքերէն է, անօգուտ չ'երեւար քիչ մ'երկարաձիգ տողել իր նկարագրութիւնը։

Չանլը – քիլիսէի (զանգակաւոր եկեղեցի) անունն է ըստ Հայոց Ս. Կարապետ, որով կը կոչեն Հայք զՍ. Յովհաննէս Մկրտիչ։ Ս. Գրիգոր Լուսաւորիչ հիմնած է այս վանքը. բայց շատ անգամ փլած աւերած երկրաշարժով՝ միշտ ալ նորոգուած է միեւնոյն ծրագրով՝ վերջին անգամ 1787ին։ Արեւելից մէջ մարդիկ եւ իրք կը յաւերժանան՝ անփոփոխ ու անայլայլելի։

Վանքը կառուցուած է լերաց կողին վրայ՝ որ կ'իշխեն Մշոյ դաշտին հիւսիսակողման եւ այն լեռնօղակին՝ որ դէպ ի հարաւ ձգուելով երկարելով՝ կը սեղմեն զԱրածանին իրենց լերանցամէջքին մէջ ի Կինձ։ Մենք որ կ'իջնայինք երաշտին ու ամայի լեռնադաշտերէն, Ս. Կարապետի վանքն՝ միայնակ ու գրեթէ զանխուլ ինկած մէկ անկիւնը՝ մեզի երեւցաւ իբրեւ խաղաղաւէտ առանձնարան մը մարած շիջած հին քաղաքակրթութեան քանի մը յետսակեացներու։ Անգամ մ'որ գտած է զինքն աչքը՝ ա՛լ հայեցուածքն չի հեռանար այն զանգակատներէն որ այնպէս խիստ ստուերարկուած են ի մայր խոնարհած արեւու ջերմափիւռ նշոյլներէն, եւ հաճութիւն կը զգայ իւր ծրագիծ շրջանակը նկատելու որ կաղնեաց անտառաց կանաչութեան մէջէն որոշ դուրս կը ցցուի։ Սակայն անհետ կը կորսուի նոյն յափշտակիչ տեսարանն երբ կը մերձենաս։ Շինուածքն ու որմունքն անխնամ պահուած կալուածատան մը կը նմանին։ Եւ երբ մտնենք դռներէն մէկէն ներս՝ աւելի տխուր է ազդեցութիւնը։

Երկու բակեր վանատան այսպէս ըսենք գաւիթը կը կազմեն, որոնց միոյն՝ հիւսիսակողմն՝ կը կցին անտաշ անկոփ քարերով կառուցուած յոռի շինութիւնք, ուր գոմքն է. միւսին՝ արեւելակողմն՝ կից է մէկ կողմանէ թերատ շինուածք մ'որ այժմ արդէն գրեթէ աւերած է եւ որ դպրոց պիտի ըլլար, եւ Ս. Գրիգորի Լուսաւորչի հինաւուրց փոքր մատուռն եւ միւս կողմանէ վանատան մէկ ճակատն կից ներքնագաւթին ուր է եկեղեցին։ Այս գաւիթը կը պատեն միադստիկոն կամարակապ խցիկներ, ուր եպիսկոպոսին եւ վարդապետաց բնակարանքն են, ուր են նաեւ դպրոցի, ուխտաւորաց եւ վանքին այլ պիտոյից կարեւոր տեղերը։ Ասոնց ամէնուն ծածկն ալ հարթաձեւ է, եւ բովանդակը նսեմ, անփայլ ու խաթարուած։

Եկեղեցին հայկական ոճ ունի, որ անփոփոխ միակերպ է։ Ուղղանկիւնի եւ գրեթէ չորեքկուսի գլխաւոր մարմինը՝ որ քանի մը մանրապատուհաններ ունի, կը բառնայ իւր վրայ երեք գմբէթ, որոնց երկուքը՝ սրածայր սալածածկ տանեօք ուր գօսացած խոտ կը բուսնի, կը լուսաւորեն ներքսակողման մատուռնքն. իսկ երրորդն՝ անգմբէթ՝ կը լուսաւորէ նաւամէջն եկեղեցւոյն իւր մանրաչափ լուսամուտներով։ Ո՛չ մեծութիւն կայ, ո՛չ ազատարուեստ համարձակութիւն, ո՛չ վայելչութիւն։ Բազմաթիւ խաչանիշներու եւ ուխտաւորաց քանդակած յուշագրութեանց մէջ հազիւ կը տեսնուին քանի մը զարդաձեւեր՝ հիւսկէն եւ բաւական նուրբ քանդակուած որ լուսամուտներու չորս կողմը կը պատեն։ Ներքին կողմն մթին է եւ մերկ։ Հասարակ են սիւնները, իսկ գորգերը շատ խեղճ, ուր կը ծնրադրեն հաւատացեալք ։ Սակայն ներքսակողմը կը շողայ խորանն ոսկեզօծ տախտակամածովն եւ այլ նուիրական իրեղէնօք։ Խորանին երկու կողմն ալ մանրադրունք կան, ուստի կը մտցուի երկու մատուռ. ձախակողմն է Ս. Ստեփանոսի մատուռը, որ ճոխ դրուա-

գուած է տախտակամածով, որ իբր յիսուն տարի յառաջ շինուած է ի Վան, եւ որուն ոսկեգոյնը կը փայլփլի պայծառութեամբ այն կիսամութ աղօտութեան մէջ։ Մատրանս մէջ կը հանգչին Ս. Ստեփանոսի նշխարքը, եւ հոս է նաեւ Սմբատայ Մամիկոնեան զօրավարի՝ Պարսից դէմ մաքառող այս մեծ մարտայարգարի գամբանը։

Աջակողման մատրան մէջ է Ս. Յովհաննու Մկրտչի գերեզմանն, որ միշտ կը մեծարուի. այս ալ դրուագուած է նոյնպիսի ոսկէզօծ տախտակամածով. մատրանս մէջ կը հանգչի Ս. Յովհաննու Մկրտչի նշխարաց մի մասն, եւ Ս. Աթանագինեայ[1] հայ եպիսկոպոսին մարմինն, որուն գերեզմանը գրեթէ ծածկուած է բարեպաշտից նուիրօք. մուտքին քով քար մը կը ցուցընէ այն տեղն ուր քաջաց քունը կը ննջէ Գայլ Վահան Մամիկոնեան սպարապետ՝ Սմբատայ հայրը։ Ուրիշ երկու մատրունք ալ կան նախընթացից աջ ու ձախ կողմն, որ քիչ անգամ կը բացուին. մին՝ Ս. Գրիգորի մատուռը՝ ցած ու մութ մենարան մըն է, ուր Ս. Գրիգորի աղօթարանը կը համարին։

Եկեղեցին շատ անգամ կործանուած ու նորոգուած ըլլալով՝ հնագոյն շինութենէն միայն արտաքին պատը մնացած է։ Այս որմոյն մէջ ագուցուած են մեծամեծ քարակոտորք՝ ճոխաքանդակ խաչերով եւ հին հայ լեզուաւ գրեթէ անընթեռնլի արձանագրութեամբք խճողուած։ Մէկուն վրայ կը կարդանք. "Ես Յովհաննէս սարկաւագ կանգնեցի այս խաչն ի փրկութիւն հոգւոց ի թուին 601։„ Այս պատին մէջ կան քարեր որ պէսպէս ծագումն ունին. ի մասնաւորի կը տեսնենք փոքրիկ քար մ'որուն վրայ հարթաքանդակ դուրս ցցուած կ'երեւան երեք սրահ Ասորեստանեայց ամենականուխ ժամանակներէն։ Մեծ խաչ մ'որ ամէնէն գեղեցիկն է,

[1] Բնագիրը "Ադամ„ կ'ըսէ։ Ծն. Թարգմ.։

*այսպիսի արձանագրութիւն մ'ունի. "Թուին 1212 կանգնեցաւ այս խաչն ի փրկութիւն հոգւոյ Մելքիսեդեկի եպիսկոպոսի, Ներսէսի քահանայի[1] եւ իւր ծնողաց. ամէն:" Դեռ կը տեսնենք Յակոբայ վանացս ու Կարնոյ եպիսկոպոսին գերեզմանն, որ սպանուեցաւ Քրդերէն 1256ին, եւ դարձեալ դամբանն Մամբրէ եպիսկոպոսին՝ Մամիկոնեանց ցեղէ, որ մեռաւ 1882ին: Պէտք է յիշել վերջապէս Նաեւ Մուշեղ (601) Մամիկոնեան զօրավարին եւ Վարդ-Պատրիկ արծրունի զօրապետին դամբանները. այս վերջինոյս կինն էր որ Ս. Յովհաննու մատուռը մտնելով՝ ընդդէմ Սրբոյն Գրիգորի կանանց դէմ դրած արգելքին՝ շանթահար եղաւ:*

*Սուրբ Կարապետ վանքն ուղղակի Կ. Պոլսոյ պատրիարքին իրաւասութեան ներքեւ է, որ է այժմ Խորէն Աշըգեան: Վանքը կը կառավարէ եւ կը տնտեսէ ծայրագոյն վարդապետ մը՝ զոր տեղւոյն քահանայք եւ Մուշի գաւառական ժողովի անդամք կ'ընտրեն, որ կրնան նաեւ վար առնուլ: Ծայրագոյն վարդապետիս բոլոր ծախքերը կը տրուին. բայց սեպհական ստացուածք զայն ունի միայն որ ուխտաւորներէն կ'առնու: Իւր զգեստն է՝ մանուշակ մետաքսէ պարեգօտ, երկար վերարկու մը սեւ՝ մանուշակ աստառէ եւ գլխադիր մ'որուն վերին մասերը մանուշակագոյն են: Վանքիս հասարակութիւնը կը կացուցանեն 12 "վարդապետք" եւ 3 սարկաւագ. ասոնց ստացուածքն է վանքը, որ կը տնտեսեն իսկ զայն: Այս անձինքը կը կազմեն ընդհանուր ժողովն, որ՝ ըստ սահմանադրութեան շնորհելոյ Սուլթանէն 1863ին, կ'ընտրէ գործադիր յանձնաժողով մը չորս վարդապետաց, զոր Կ. Պոլսոյ պատրիարքը պիտի հաստատէ: Այս յանձնաժողովն է որ վանքին բոլոր գործքերը կը մատակարարէ, եւ ծանր դիպաց մէջ խորհրդի կը կանչէ:*

[1] Այս Ներսէս եղբայրն էր եպիսկոպոսին:

Ծն. Հեղ. :

Վարդապետները գեղերը կ'երթան տուրք ու ընծայ հաւաքելու, որ հետ զհետէ կը դժուարնայ. ընդհակառակը շատ քիչ խնամք կը տանին վանաց կալուածոց, որոնցմէ շահ հանելու անատակ են, եւ յաճախ չեն գիտեր ինչպէս անցընեն պարապոյ ժամանակները: Առօրին կրօնական պարտաւորութեանց կարգին մէջ չունին ժամասացութիւն եւ պատարագ. միայն կիւրակի օրերը կը մատչի, այն ալ ոչ ամէնքը կը մատուցանեն. վասն զի միեւնոյն օրուան մէջ միանգամ միայն կարելի է պատարագել խորանի մը վրայ: Գիտնական, գրական ու արուեստագիտական զբաղմունք անծանօթ են իրենց: Շաբաթն երկու օր՝ չորեքշաբթի եւ ուրբաթ՝ պահք ունին քահանայք, եւ այս օրերն միս, կթեղէն, ձու եւ ձէթ չ'ուտուիր: Մեծպահոց մէջ միաժամ կը պահեն, այսինքն՝ մի անգամ կ'ուտեն օրը՝ իրիկունը ժամն հնգին, եւ այս միջոցին ձուկն անգամ արգիլեալ է. սակայն շաբաթ ու կիւրակի օրերը ծոմ չի պահուիր: Ամենախստակեացներէն կ'ընտրուի աղօթկոչը՝ որ հաց չորաբեկ միայն կը ճաշակէ, բայց միայն կիրակի օրերը քիչ մը կթեղէն ալ ի միասին: Քահանայից զգեստն է սեւ "վեղար" (vėrar), մեծ պարեգօտ մը (enteri) եւ "վերարկու:" Իրենց սնունդն ու հագուստ ամէն բանով միայն կէս ոսկի (11 Ֆր.) կ'իյնայ անձին համար ամիսը. բաց աստի ունին ուխտաւորաց նուիրատուքն: Քահանայից կարգը մտնողն առնուազն երեսնամեայ պիտի ըլլայ, ուսմունքն աւարտած եւ եօթն վարդապետաց կազմած յանձնաժողովի մ'առջեւ, որուն գահերէց կը նստի ծայրագոյն վարդապետն կամ եպիսկոպոսը, քննութիւն պիտի ընէ: Այս յանձնաժողովը կ'անուանուի գաւառական ժողովէն, ուր որ ամէն գիւղ ներկայացուցիչ մը կ'առաքէ: Վանքը մտնող քահանայք պարտաւորութիւն յանձն կ'առնուն մինչեւ ցմահ մնալ վանքն եւ ամուրի կամ այրի մնալ: Կենդանութեան ժամանակ ազատ տրամադրութիւն ունին

*իրենց ստացուածոց. բայց մահուանէն ետքն ամէն ունեցածնին վանքին կը պատկանի։ Սարկաւագները վարդապետաց աշակերտքն են, որ կը սնուցուին ու կը խնամուին, բայց վարձք չեն ստանար։*

*Որպէս զի քահանայից եւ ուսուցչաց պակասութիւն չըլլայ, դպրոց մ'ալ կայ հոս, ուր իբր 30 որբ կամ աղքատ գիւղական տղաք կ'ուսանին՝ բնակութիւն, սնունդ ու հանդերձ ալ ստանալով։ Երեք ուսուցիչ կայ. մին՝ վարիչը՝ կ'ուսուցանէ հայերէն եւ կրօնագիտութիւն., միւսը՝ տաճկերէն, եւ երրորդը՝ թուաբանութիւն, երկրաչափութիւն, պատմութիւն եւ աշխարհագրութիւն։*

*Վանքին եկամուտքն է ուխտաւորաց տուրքերէն, գիւղերէն ժողվուած նուէրներէն եւ վանքին կալուածաբեր արդիւնքներէն։ Ուխտաւորք ցանցառ են ճամբաներու անապահովութեամբն ու հասարակաց թշուառութեամբը. եկողներն ալ հազիւ քանի մ'ոչխար եւ այլ դոյզն նուէր կը թողուն։ Գիւղացիք տնտեսապէս կը թշուառանան անյաջող հունձքերով եւ Քրդաց աւարառութեամբք, եւ թերեւս յուսահատ կ'ընկճին տեսնելով որ չի լսեր Աստուած իրենց աղաչանաց։ Զանլըի կալուածքներն անշահ կը մնան, ուստի եւ վանքը պարտք ալ ունի։ Սակայն եթէ տնտեսուին այս հողերը կրնան ամէն ծախք լեցնել. անբաւ տարածութիւն ունին այս կալուածք (— ժամեր պէտք է ձիով կտրելու անցնելու այս երկիրները. —) եւ են հատանելի անտառներ, վարելի հողեր եւ բուսաբեր մեծատարած լեռնադաշտեր։ Բայց գրեթէ անմշակ կը մնան, եւ վանքին ամենամեծ ծախքն է բնակչաց եւ ուխտաւորաց պէտք եղածին չափ ցորեն հայթաթել։ Այժմ երեք ագարակ ունի վանքը, 1000 գլուխ այծ ու ոչխար, 100 գլուխ եզ ու կով, 60 գոմէշ, 20 ձի, 20 էշ ու 4 ջորի։ Հոս կայ 150 ծառայ։*

*Ահա այս է հայ վանք մը։ Աւելորդ է կարծեմ տողել հոս ուրիշ մանրամանութիւններ՝*

ցուցընելու թէ ի՛նչ միակերպ, ծոյլ, ձանձրանալի, անգործ ու տխուր կեանք է անոնց որ կ'անցընեն ի Ձանլը իրենց օրերը տխրագին: Երկար ու երկար շաբաթներ անցուց Գէորգ հոս՝ գորգի մը վրայ ընկողմանած: Իսկ ես շատ իսկ ժամանակ ունէի այս անցաւորաց ընդունայնութեան վրայ խոկալու:

Բայց ի առօրին գրաւոր աշխատութենէն՝ որ մեծաքանակ են միշտ այսպիսի ուղեւորութեանց մէջ եւ միշտ անվերջանալի, մնացած ժամանակս կ'անցնէր հազար ու մէկ մանր զբաղմամբ, որոնց ամէն մէկը մեծ գործք է այս խուլ ու թաքուն անկեան մէջ, բայց մանաւանդ այցելութեամբք: Ա՜հ այս այցելութիւնք: Այցելութիւնք վարդապետաց, այցելութիւնք ծառայից, ուխտաւորաց, ուղեւորաց եւ այլ որչափ անձանց: Յանկարծ մէկը կը մտնէ խուցդ — ի հարկէ առանց բախելու դուռը. կը նստի գորգին վրայ, գլանիկը վառէ, եւ երբեմն քառորդ մը կը նստի լուիկ մնջիկ. — այցելութիւն մըն է այս: Զարմանալ, մանաւանդ թէ նեղանալ պէտք չէ. այս պարզամիտն, անզգոյշն, այս տաղտկացուցիչն, շինականն ու որդնալիցն — այս ամէնն ալ է միանգամայն. — պատուելու եկած է զքեզ: Անհրաժեշտ հարցմանց կոյտ մը կը դրուի առջեւդ քու ուղեւորութեանդ, ունեցած դիտաւորութեանցդ, քու ամէն բանիդ նկատմամբ: Ի հարկէ արդէն գիտէ այցելուն այն ամէնն՝ ինչ որ կ'ընես. տեղեակ է քու գործոյդ, սովորութեանցդ, զբաղմանցդ, կերած-խմածիդ, պառկելուդ, ունեցած կահ-կազմածիդ, ձիերուդ, շանցդ, վերջապէս ամէն ունեցածիդ եւ նաեւ չունեցածիդ: Կը շօշափէ զգեստներդ, գործիքներդ, զէնքերդ, ինչ բան որ ձեռքն իյնայ. գինը կը հարցընէ անոնց, միւս կողմանէ ինքը գին մը կը դնէ, եւ վերջապէս կ'առնու հողաթափներն ու կ'երթայ: Կ'ըմպենք այս դառնութեան բաժակն, եւ երջանիկ ենք եթէ երբեմն նոր տեղեկութիւն մ'առնուլ կարենանք:

Սովորութիւն է դուռը երբեք չփակել, եւ "ամենամեծ անկրթութիւնն է" կ'ըսէ Թարգմանը, զմէկը ետ ղրկել։ Գեղերուն մէջ երբեմն երկարատեւ եւ դժնդակ չուէ վաստակաբեկ՝ բիւրիցս խընդրած եմ որ հեռանան, մինչեւ անգամ պառկած, բայց ոչ ոք տեղէն կը շարժէր. "Էֆէնտին կամ պէյը, կ'ըսէին, կրնայ պառկել, քննանալ, ինչ որ ուզէ՝ ընել, զինքն անհանգիստ չենք ըներ։" Ի զուր է հասկցընել ասոնց որ իրենց ներկայութիւնը կը տաղտակացընէ զձեզ, եւ թէ պէտք ունիք առանձին ըլլալու։ Պատճառն այն է որ այր մարդու մը կեանքը հրապարակական է յԱրեւելս։ Ամէն գործքդ արդէն կը տարածուի, կը մեկնուի, կը գովուի կամ պարսաւուի։ Տունն օրն ի բուն բաց է ամէն այցելուի որուն սկահակ մը սուրճ եւ գլանիկ մատուցանել իւր պարտքն է։ Ամենէն անընտրող հարցմունք կ'ըլլան, եւ ինքը պարտք կը զգայ պատասխան տալու՝ նաեւ եթէ սուտ ստիպուի։ Միայն կինն է խորհրդական։ Մեր Թարգմանը կ'ըսէ՝ թէ մահմետականի մը իւր կնոջ վրայ խօսիլն ամենամեծ անկրթութիւնն է։ Այսպիսի բարոյից պատճառաւ զարմանալի չէ որ ամենադոյզն դէպքերն իսկ ամէն կողմն կը տարածուին եւ երբեմն շատ հեռուներն իսկ։ Նորալուրք կարծես կարաւանաց բոժոժիկներէն կախուած են, այնպէս շուտ կը տարածուին ամենահեռաւոր գիւղերն իսկ։ Կ. Պոլսոյ սակաւաթիւ թերթերն՝ որ այս անկիւնն իսկ կը թափանցեն, սնունդ կու տան ասոնց՝ պատմելով դէպքերն ըստ իրենց հեշտի։ . . .

Ամենադոյզն դէպքն հոս ի Զանլը նոյն արդիւնքն ունի, ինչ որ քար մը գորտախիտ ճահճի մը մէջ։ Մեր հասնելն այնպիսի դէպք մըն է որուն հետեւութիւնքն երկայն բարակ կը համրուին։ Վանայ Ռուսաց հիւպատոսին անցնիլն բիւր մեկնութեանց նիւթ է։ Երկրաշարժի քանի մը ցնցմունք գլուխները կը մոլեգնոտէ։ Հրացանի հարուած մը

*արեւամտէն ետքը՝ բաւական է ամբողջ վանքն տակնուվրայ ընելու. ամէնքը կը դիմեն զինավառ՝ առանց գիտնալու թէ ուր, կանչելով, գոռալով շարժտրկելով, խառնիխուռն իրար անցնելով՝ ծիծաղելու չափ. տեղեկանալով կ'իմացուի որ գիշերապահ պահապան մը գող կարծեր է նշմարել կաղամբանոցի մը մէջ եւ նշան արձակած: Հովիւ մը կը վազէ կը պատմէ՝ թէ արջ մը փախցուցեր է ոչխարներէն մին. խուռն կը դիմեն, կը հալածեն աղմկալից, գլխաբաց՝ մինչ գազանն անտառի մացառաց մէջ կը ճողոպրի: Ըստ հեշտի այդին անդին հրացաններ կ'արձակուին քանի մ'անգամ եւ կը դառնայ ամէն մէկը՝ գոհ իր քաջութեան ապացոյց մը տուած ըլլալուն:*

*Զանլըի անտառաց մէջ բազմաթիւ են արջերը, թէպէտ փոքրամարմին են եւ դժուարաւ կ'որսացուին: Եփրատայ ափունքն որսի երէն շատ առատ է՝ արօս, հնկայ սագ, բադ, այլեւայլ արագիլազգիք, բայց միշտ ամենալաւ հրացանի մը տարողութենէն հեռու կը փախչին: Շատ բազմաթիւ են նոյնպէս գիշատիչ թռչունք, եւ շատ քաջ յափշտակիչ են, որոնց կարգէն են նաեւ անծեղն ու ագռաւը. մեր թարգմանն երկու թռչուն զարկաւ՝ երկու յաղթամարմին անգղ, որոնց մին 9 քիլոկրամ կը կշռէր եւ իր թեւերու տարածութիւնը ծայրէ ծայր 2 մեդր էր, միւսը կը կշռէր 11 քիլ. եւ 2 մեդր 60 սնդ. տարածութիւն ունէր:*

*Մուշ եւ իր շրջակայքն ըրած իմ ուղեւորութեանց մասին չեմ խօսիր, բայց միայն կը յիշեմ հոս Սուրբ-Յովհաննէս հայ վանքին այց ելլելն, որ դաշտավայրին միւս կողմը նստած է այն լերանց վրայ որ հարաւակողմն դէմ առ դէմ կանգնած են են Սուրբ-Կարապետին: Հոկտեմբեր 24ին ժամն 8ին Զանլըէն ելայ՝ ընկերակցութեամբ մեր թարգմանին. ժամ մ'ետքը դաշտավայրն ենք, ուր չոր հեղեղատի մը մէջ կը տեսնենք 15 մինչեւ 20 մեդր*

խորութեամբ բուսաբեր հողագետնոյ փուլեր: Մշոյ դաշտը կամ լաւ եւս լեռնադաշտը չափազանց բերրի է եւ Հայաբնակ գաւառաց շտեմարանաց մին կ'ըլլար եթէ գիւղացին քիչ մ'ապահովութեան, դոյզն արդարութեան յոյս ունենար, եւ եթէ դիւրագնաց ճամբաներ արդեանց տեղափոխութիւնը դիւրացընէին: Ժամը 11ին Եփրատ հասանք՝ Գրդուռի սահանաց կամ մանաւանդ սրընթաց յորձանաց մօտ, որ կը ձեւանայ երկու կղզիէ եւ ժայռերէ որ Եփրատայ ընթացքին խոչընդոտն կը կանգնին եւ կը սեղմեն կը ծառացընեն զայն Կինճի նեղանցք կիրճը մանելէն քանի մը հարիւր մեդր յառաջ: Կ'անցնինք Գըզըլ-աղաճ երկու հարիւր տնուորէ աւելի գիւղն՝ որ համբաւաւոր է իւր ծխախոտի ընտրութեամբ: Նըրբակածան արահետով մը դժուարաւ վեր ելլելով՝ ժամը 5ին կը տեսնենք Սուրբ-Յովհաննէս վանքն, որուն ընդհանուր տեսքն՝ թէեւ աւելի փոքր եւ աւելի խեղճ՝ նոյն է Սուրբ Կարապետի հետ:

Չորս քահանայք կ'ապրին այս մենութեան մէջ, եւ կը սպասեն ուխտաւորաց՝ որ հետ զհետէ կը քիչնան, եւ կամ Եփրատայ ձախ ափանց կողմերը կ'երթան հաւաքելու նուէր, ինչպէս Զանլըի վարդապետք աջափնակողմանքը: Դպրոցին մէջ տասնուերկու աշակերտ միայն կայ՝ վտիտ ու տժգոյն եւ ցնցոտաւոր, եւ միայն մէկ ուսուցիչ: Հարուստ է վանքը դամբաններով, խաչքարերով եւ մասունքներով: Ծառ մը ցուցուցին մեզ՝ երկիւղածութեամբ պարսպապատուած, որուն ոտքը թաղուած է աման մը որուն մէջ կայ եղեր այն իւղն որով Քրիստոսի ոտքն օծուեցաւ: Եկեղեցին երեք եկեղեցեաց առընթերակաց գումարութիւն մըն է՝ երեքն ալ ընդարձակ նախասրահ մ'ունենալով առջակողմը: Կ'ըսեն՝ թէ մի մասը Ս. Գրիգորի Լուսաւորչէն է: Ձեռագիր՝ մեծաւ մասամբ կրօնական գրքեր՝ տեսանք հոս, ի մէջ այլոց հսկայածաւալ

Վարք սրբոց մը 1122էն՝ զարդարուած ամենայն խնամքով մանրանկարներով։ Սուրբ Յովհաննէսի մի միակ հետաքրքրութեան առարկան են այն կարգ մը հրամանագրերը, զոր տուած են, կ՚ըսեն, Ս. Գրիգոր, Ալի եւ Լէնկթէմուր։ Վերջին երկու գրութիւնք՝ որոնց վաւերականութեան երաշխաւոր չեմ, պահած են վանքը Քրդաց աւարառութիւններէն եւ անգամ մը մինչեւ անգամ աւար առնուածն դարձընելու առիթ եղած։ Լէնկթէմուրի հրամանագրին առթիւ կը պատմէ աւանդական զրոյցը՝ թէ այս ահարկու աշխարհակալն՝ երբ Մշոյ դաշտավայրը բանակած էր, վանաց մեծաւորին այցելութիւնն ընդունեցաւ։ Ի փոխարէն գնաց ինքը Լէնկթէմուր նոյն Ս. Յովհաննէս վանաց այցելութեան, ուր այնպէս հիւրամեծար ընդունելութիւն գտաւ որ ըսաւ վանահօր խնդրել ինչ որ ուզէ։ Վանահայրն ըսաւ որ կը խնդրէ միայն խուց մը լի հայ գերեօք։ Լէնկթէմուր այս դոյզն խնդիրքը շնորհեց ժպտելով։ Բայց որչափ զարմացաւ երբ տեսաւ որ նոյն րոպէին որ հայ մը խուցը կը մտնէր աբեղայ կը դառնար եւ պատուհանէ դուրս կը ցատկէր։ Այսպէս ազատեցան հայ գերիք մինչեւ ցվերջինը։ . . .

Զանը դառնալու համար մանուածոյ շրջան մ՚ըրինք դաշտին մէջ, որպէս զի Խորոնքն ալ տեսանենք, որ Մովսէսի Խորենացւոյ ծննդավայրն է, եւ ուր գեղեցկաքանդակ խաչքարեր կայ՝ կ՚ըսէին։ Երկու հատ միայն գտանք, որ շատ հետաքրքրական, չէին կ՚երեւայ թէ միւսներն առած տարած են Քուրդք իրենց տան պատերուն գործածելու։ Հայ գիւղ մը կանգ առինք կաթ խմելու. հոս լսեցինք սա խորհրդածութիւնը. "Ի՜նչպէս մեծանձն են Եւրոպացիք. կը վճարեն ինչ որ կ՚առնուն մեզմէ։ Ե՞րբ մեր տէրը պիտի ըլլան։ . . . Արդէն Ռուսք ալ նոյնպէս կը վճարեն։„

ԱԼՊԷՐ ՏԸՎԸԼԷ





# ՁԱՆԼԸ ՔԻԼԻՍԷԷՆ ՄԻՆՉԵՒ ԲԱՂԷՇ[1]

*Բաղէշ, 26 Յունուար 1891:*

*Վերջապէս հասաւ այն օրն՝ որուն երկար ժամանակէ ի վեր եւ այնպէս անհամբերութեամբ կը սպասէինք, որ սկսելով մեր ուղեւորութիւնը շարունակել ցմիշտ պիտի թողունք Ս. Կարապետի հինաւուրց վանքը: Ի՞նչ հաճոյական բան է անեզր անծիր անջրպետին մէջ՝ որ մեր առջեւ կը բացուի, նետուիլ, ուրախ ըլլալով որ ազատեցանք Ձանլը-քիլիսէէն եւ իւր բերդանման թանձրապարիսպ որմերէն, ուր այնչափ երկայն եւ այնչափ տխուր ժամեր անցուցինք:*

*Սակայն վանաց ասպնջականք կրցածնին ըրին որ մեր այն իրենց մենաւոր մենաստանին մէջ կեցած օրերն ըստ կարելւոյն տաղտալի չըլլան, եւ ասոր համար անկեղծ սրտէ կը յայտնեմ շնորհակալութիւնս:*

*Այսօր վանքը կարծես պաշարուած փակուած է. ամսէ մ'աւելի է որ թանձրախուռն կը տեղայ ձիւնը, որ իւր սպիտակափայլ տարածութեամբ պատած է Մշոյ դաշտն ու անոր շրջափակ դժուա-*

---

[1] Ալպէր Տըվըլէ կը խօսի նաեւ Հայոց այժմու վիճակին վրայ, զոր աւելորդ համարեցանք թարգմանել: Գաղղիական Թերթին խմբագրութիւնը կը յայտնէ նոյնպէս որ նոյն անձին Ձանլը-քիլիսէէն մինչեւ Դաւրէժ եւ անկէ մինչեւ Բաղէշ ըրած ուղեւորութեան նկարագրութեան մասը տպուած է ի բաց թողուլ: Միայն կը յայտնեն թէ նոյն ուղեւորն նոյեմբեր 15ին ելած է Ձանլըէն եւ Վան եկած է՝ Վանայ լճին հիւսիսակողմէն, ապա անցնելով ի Դաւրէժ կեցած է հոն դեկտ. 1էն մինչեւ Յունուար 5: Յետոյ որպէս զի միանայ Գէորգ Փիտոնի հետ՝ ձմեռ ատեն կտրած անցած է տաճիկ-պարսկական սահմանակողման լեռներն, հասած Վան եւ Վանայ լճին հարաւակողմէն դիմած Բաղէշ, ուր հասած է Յունուար 23ին: Յաջորդ մասերը Գէորգայ գրչէն են: Ինչպէս ըսինք արդէն, այս մասերէն կը քաղենք միայն այն կտորներն որ մեզի հետաքրքրական կ'երեւան: Ծն. թրգմ.:

բասեպ լեռները։ Օրեր ամբողջ կը տեսնէինք որ անընդհատ ծիւ ծիւ ձիւն կու գար այնպէս կուռ թանձրախիտ, որ քանի մը քայլ անդին տեսնել չէինք կրնար։ Բայց այս կողմերը երկար չեն տեւեր դէշ օդերը. փոթորկին կը յաջորդէ խաղաղութիւն, եւ մառախուղին՝ պայծառ երկինք, եւ այժմ կրնանք որոշ տեսնել Արածանիոյ մանուածապատ ծամածուռ ընթացքն որ կ'ակօսէ կը կտրէ այս ընդարձակածաւալ դաշտն՝ ուր 96 գիւղեր կանգնած են, որոնց հազիւ թէ տաս հատն սեւ բծի պէս կ'երեւան մէջի։ Հարաւակողմն Տաւրոսի լերինք չքնաղատեսիլ կ'երեւան սպիտակ, գորշ ու կապոյտ, եւ կարծես նուրբ եւ թաւշանման աղուամազով ծածկուած. արեւելեան կողմն Նիմրոտ լեռն սպիտակափայլ՝ սիգութեամբ կ'ամբառնայ իւր բութ-կոնաձեւ եւ բազմակօս կտրտուած զանգուածը. եւ անդին հեռուն՝ ուր գոյները կը սկսին ձուլուիլ խառնուիլ, կը նշմարուին Սիփանայ մշուշապատ գագաթունք Վանայ լճին հիւսիսակողմը։ Իրիկունն՝ ի մայր խոնարհող արեւու վերջին ճառագայթներով՝ լերանց երաշտին կատարներն այնպէս պայծառ ցոլացած կ'երեւան հորիզոնին լըջակապոյտին վրայ, մինչ անդին բարձրաբերձ սարերը կարծես բիւր կայծեր են՝ որ պղնձագոյն աղօտալոյս մը կ'անդրադարձ ցոլացընեն այն ամպերուն որ անոնց ստորոտը կը պատեն եւ զորոնք խաւարաստուերը կը ծածկէ յամրաքայլ։

Հետզհետէ՝ գրեթէ ուսողական ճշդութեամբ՝ կ'իջնայ բարեխառնութիւնը. այժմ ցորեկէն գիշեր ջերմաչափը կը խաղայ 9 եւ 12 աստիճանաց մէջ զրոյէն վար։ Երբ հիւսիսահողմը կը սկսի փչել այնպէս դաժան ու կծու՝ մանաւանդ այս 2000 մեդր բարձրութեամբ լերանց գագաթնակողմանքն, աննաթանձր զգեստներն ալ չեն պաշտպաներ անոր խայթման դէմ։ Երբեմն կը փչէ մրրկայոյզ բքախառն՝ նուրբ ու սառած ձեան պաղպաջուն հատիկ-

ները ցնորացուցիչ շրջաններով յորձանապտոյտ մրրկելով։ Տեղ տեղ ձիւնը կը ժողվուի կը շեղջակուտի ճամբաները գոցելով, խոռոչները լեցընելով եւ հետախաղաղ ծածկելով հեղեղատներն, այնպէս որ վտանգ կայ ուղեւորաց անզգերծ ընկղմելու անդնդասոյզ։ Ա՛լ վտանգաւոր եղած է՝ յաճախ նաեւ անհնար իսկ՝ լերանց վրայէն կտրելով ճամբորդել, եւ ամէն տարի այս ժամանակները շատ անձինք անհետ կը կորսուին, որոնց դիակները հազիւ թէ գարնան կը գտնուին դահավէժ անդնդոց խորքը։ Ուստի ձմեռ ժամանակ գրեթէ կ'ընդհատի երթեւեկը, եւ շատ մը գեղեր՝ ձեամբ կիսաթաղ ծածկուած՝ բոլորովին անջատուած կը մնան աշխարհէ ամիսներով։

Դաշտն իջնելու համար մեր բռնած ճամբան էր 30 սանդիմեդր լայնութեամբ խեղճ նրբուղի մը, զոր քանի մը հետիոտն ուղեւորք բացած են քալելով։ Աջ ու ձախ կողմը մինչեւ մէջք կը խրի մարդ ձեան մէջ, եւ երբեմն՝ եթէ զգոյշ չըլլայ՝ կ'իյնայ 5—6 մեդր խորութեամբ խոռոչներու մէջ որ ծածկուած են աչքէ ձիւնաթաղ եղած՝ հովին մղած բերած ձիւներով։ Նրբուղին կ'երթայ գրեթէ միշտ խորին դահավէժ վհերու եզերքէն, այնպէս որ փոքր սխալ քայլ մը, դոյզն սայթաքուածք մը կրնայ վար նետել։

Ժամը տասն էր երբ ամպակոյտին մէջ մտանք՝ որ դաշտն ամբողջ տարածուած բռնած էր. քանի մը վայրկեան ետքն ա՛լ արեւ չենք տեսներ եւ բարեխառնութիւնը կ'իջնայ զգալաբար. հազիւ մէկ ու կէս ժամ ետքը՝ անցնելով Սորդար եւ Փակա գիւղերն որ վանքին գոմատանն է յաղթ շներէ պահպանուած, կ'իջնանք Մշոյ դաշտին երեսը՝ 1.500 մեդր բարձրութեամբ։ Մէգ պատած է չորս կողմը. փայտաբարձբալխիրներով մարդիկ շարժուն ստուերներու պէս կ'երեւան, շատ գեղեր՝ որոնց քովէն կ'անցնինք, աչքէ ծածկուած անտես կը մնան, իսկ

ուրիշ գեղեր՝ աղօտ երեւցած սեւկակ բծեր՝ կարծես ոչնչէն յերեւան կու գան եւ չէք կ'ըլլան կրկին: Ժամն երկուքին մէգը փարատեցաւ, օդը պայծառացաւ եւ երեւցաւ անեզր անծիր դաշտն՝ բազմաթիւ գիւղերովն, որոնց մեծ մասը բլրակի մը վրայ կանգնած է: Այս գիւղերէն մէկ քանին շատ գեղեցիկ են. այսպէս Խեպլիան՝ իր ձողաբարձի որմածներով եւ բազմաթիւ առուակներով՝ որ կ'ակօսեն զգետը, եւ աւելի հեռուն՝ Տօմս, ուր պիտի գիշերենք եւ որ բերդաձեւ կարծես կ'երեւայ: Մեծ աւան մըն է Տօմս՝ 100 տնէ, կէսը Հայ, կէսը քուրդ: Խանն իջեւանելէն ետքն՝ որ մեծ ախոռ մըն է՝ որուն յետսակողմը փոքրիկ խցիկ մը կայ անջատուած միւս մասերէն 80 սանդիմեդր թանձրութեամբ պատով, եւ ուր պիտի անցընենք գիշերը, ելանք գիւղը պտտեցանք, ուր շունք ամէն կողմանէ կը հաջէին: Երբ բնակարանը կը դառնայինք այն ատեն՝ երբ գիշերը պատել էր սկսած, կին մը դրան մէջ կանգնած նշան ըրաւ երթալու իր քով: Մերձեցանք իրեն քիչ մը զարմացած եւ հոգերու մէջ: Գաւթին մէջ ուրիշ կանայք ալ մտան ելան նշան ընելով ամէնքն ալ որ մտնենք. առաջին անգամ կանչողը տեսնելով որ չենք հասկընար իր ըսածը՝ սկսաւ ձեւերով մեկնել իր միտքը: Դէպ ի տուն մղեց զմեզ եւ գլուխը հակած յենլով բաց ձեռքին՝ կը կրկնէր “կնիկ, կնիկ„: Մտցուց զմեզ մթին մեծ խուց մը զոր միայն իւղի կարմրկեկ լոյսը կը լուսաւորէր՝ հողէ ամանի մը մէջ վառուած: Խցին մէջ տեղ գետնի վրայ փռուած էր նոյն օրը մեռած երիտասարդ կնոջ մը մարմինը: Չորս կողմը նստած գեղին կանայք կ'ողբային իրենց բարեկամ կնոջ մահը եւ գովասանքներ կ'երգէին, մինչ անոր այրն իր երկու որդւոց քով՝ լռութեամբ կը ծխէր: Դեռատի կին մը մեռելոյն երեսը ծածկող քօղին տակ խոթած ձեռքը՝ կը փայփայէր զայն եւ կ'երգէր քաղցրաձայն եւ սրտառուչ. երբեմն երբեմն կարծես թէ իր ող-

բագին երգը կը մարէր իր շրթանց վրայ։ Այն ժամանակ ուրիշ կին մը երգը կ'առնուր եւ կը շարունակէր նոյն տխրագին ողբերգն նոյնպէս քաղցրաձայն ու գեղգեղանուագ։

Երկրորդ օրը՝ 14 աստիճան ցրտութեան մէջ՝ ելանք Տոմսէն եւ հասանք Եփրատը՝ զոր անցանք սառուցի վրայէն։ Սառնախաւը շատ թանձր չէ, ուստի ստիպուեցանք անցընել ձիերը 50 մեթր հեռաւորութեամբ իրարմէ։ Հոս Եփրատն՝ այս միջոցին 150 մեթր լայնք ունէր, բայց ձիւնահալքին պէտք է որ 500 մեթր ըլլայ լայնութիւնը, ինչպէս խորափոս գետափնեայ փուլերը կը ցուցընեն։ Քիչ մ'ետքը Մարագոմ գեղին քով կ'անցնինք ուրիշ գետ մ'ալ՝ Սեւ-Ջուր, որ Արածանւոյ մեծ օժանդակ գետն է, այժմ նոյնպէս սառած։ Ծամածուռ գետը կը հեղեղատէ այս դաշտն եւ գարնան շատ տեղ ալ կ'ողողէ։ Նոյնակերպ է ճամբան մինչեւ այն տեղն ուր Տարօնի առաջին հանդիպալերանց կը հասնինք, որոնց լեռնակողք բոլորովին այգեպատ են։ Ծխախոտի չորցած ցօղունք դաշտերու մէջ կը ցուցընեն ընդարձակ տնկարաններ ծխախոտի, որուն մշակութեամբ կ'ապրին շատ գեղեր։ Մշոյ ծխախոտը կծու է եւ զօրաւոր. գոյնն ու կէս մը նաեւ համը կը յիշեցընէ Գաղղիոյ մէջ caporal կոչուածը։ Այս ծուխը հոս շատ յարգի է։ Բնակիչք շատ կը ծխեն, բայց գրեթէ միայն մաքսանենգեալ ծուխը. ասկէ է որ ծխախոտի վարչութեան ամբողջ Մշոյ գաւառին մէջ ծախած ծխախոտն հազիւ 400—500 ղուրուշ է ամսական։

Մուշ արեւմտքէն եկողին յանկարծ առջեւը կ'ելլէ շնորհալի կերպով աստիճանաբար բազմած բլրի մը վրայ՝ բարձր լեռնէ մը պատսպարելով։

Մշոյ բնակչաց մեծ մասը Տաճիկ է, որ շատ մոլեռանդն են։ "Վայրենի են ասոնք, կ'ըսէր ինձ բարձրաստիճան պաշտօնատար մը։ Քաղաքը կրթելու ուրիշ ճամբայ չկայ, բայց եթէ բոլոր տղաքն

հնգամենից ի խոնարհ առնուլ եւ տանիլ հեռու տեղ կրթել. եւ Մուշ խաւրել հազիւ ծնողաց մահուանէ ետքը, որ այնպէս բարբարոս են ինչպէս Սասնոյ մարդիկ։"

Հին միջնաբերդի մը մնացորդք կան ի Մուշ, որ մամիկոնեան իշխանաց նիստն էր։

Յունուար 11ին Բաղէշի ճամբան բռնեցի, ուր ազգակից մը կը սպասէր ինծ, որուն լուր տուած էի իմ գալս։ Սակայն ճամբէն շեղեցայ Առաքելոց վանքն ալ տեսնելու, ուր ըսած էին թէ արժէք ունեցող հնութիւնք կան եւ մեծայարգ ձեռագիրք։ Ելայ լեռը, որ բաւական աշխատեցուցիչ էր, եւ հասայ վանքն՝ ամենայնիւ նման Չանլըի, բայց միայն ոչ այնչափ կարեւոր։ Վանքին արտաքին դրան վրայ գնդակի բազմաթիւ հետքերը կը ցուցընեն թէ Քրդերը շատ անգամ փորձ ըրած են յարձակելու։ Իսկ հետաքրքրական իրեր՝ ինչպէս ըսած էին ինծ, ամենեւին չկան հոս, բայց միայն եկեղեցւոյն մէջ 15 սանդիմեդր թանձութեամբ դուռ մը փայտադրոշ քանդակուած, եւ հայերէն Աստուածաշունչ մը 1141էն՝ քանի մը երփնագոյն զարդանկարներով։

Կը շարունակենք ճամբան Անթող լերան երկայնութեամբ որ հարաւակողման եզրն է դաշտին եւ որուն ձիւնապատ զառիթափ կողերը բազմաթիւ գոգերու բաժնուած են, որոնց մէջ ապաստանած են գեղեցկատեսիլ գիւղեր, ուր գեղեցիկ օրերուն արագիլներ կու գան բնակելու. տանեաց վրայ ձողեր կանգնած են վրան մեծ բունով՝ այժմ դատարկ։ Ծիծռան պէս՝ արագիլք ալ բախտաւորութիւն կը կարծեն բերել տան։ Այս գիւղերու հայ բնակիչք՝ աւելի մաքուր ու ժիր քան դաշտավայրին արեւմտեան կողման Հայերը՝ աւելի ալ հիւրամեծար են։ Շատերը մինչեւ Կ. Պոլիս են գնացած աշխատելու, եւ ոմանք քիչ շատ գաղղիերէն, անգղիերէն կամ իտալերէն գիտեն։

Դաշտավայրին յոգնեցուցիչ միակերպու-

թիւնը կը շարունակուի մինչեւ այն տեղ երբ Վանայ լճին կը մերձենանք։ Երկիրը յանկարծ կերպարանափոխ կ'ըլլայ կարծես, եւ աւելի նկարագեղ կը դառնայ. կաղնեաց անտառներով ծածկուած գետինը խոր հեղեղատուած է Սեւ-Ջրոյ յորդահոսանքներէն որ հեռու սփռելով երբ յետս կը քաշուի, ընդարձակ ճահիճները կը թողու. ուստի եւ այս կողմը կալութող ջերմերը կը տիրեն։

Ամսոյս 14ին հասանք Մոխր քրդագիւղը, ուր՝ ինչպէս միւս շատ մը գիւղերու մէջ ալ փոքրիկ քարաշէն շինուածք մը կայ՝ բոլոր միւս տներէն զանազանուող։ Այս շէնքերը՝ որ այսօր աւեր են, քիչ ժամանակ իսկ յառաջ պահականոցն էին տէրութեան՝ ի պաշտպանութիւն ուղեւորաց աւազակներէն եւ հեռագրական գծին պահպանութեան համար։

Մոխր անհրաժեշտ հանգրուան է Բաղէշ երթալ ուզողներուն։ Մոխրէն անդին մինչեւ Բաղէշ ալ գիւղ չկայ, եւ ձմեռ ատեն երբեմն վտանգաւոր եւ անհնար իսկ է անկէ անդին երթալ։ Հոս ուղւոյն հանգամանաց վրայ կարեւոր տեղեկութիւնք կ'առնուին, եւ ուր կ'իմացուի՝ թէ պէ՞տք է յանդգնիլ ուղին շարունակելու թէ ոչ։ Այս երկիւղալից տեղն է դաշտ կամ նեղանցք կը Ռահվա (փոթորիկ) անուն, որովհետեւ ամէն եղանակին մէջ ալ հոն բուռն սաստկութեամբ հով կը փչէ. եւ երբ ձիւնը կը տեղայ առատութեամբ (երբեմն 6—7 մեդր թանձրութեամբ) կրնայ բուքը քանի մը վայրկեանի մէջ թաղել իւր տակ ճամբորդները։

Հարցուցինք գիւղապետին՝ որ ըսաւ՝ թէ վտանգաւոր է այսօր անցքը եւ պէտք է մնալ եւ միւս օրուան սպասել. թերեւս վաղն անցանելի ըլլայ ճամբան։ Այս խորհրդոյն՝ որ շահասիրական կ'երեւար, չանսալով եւ նաեւ ոստիկանաց աղաչանաց որ հանգչիլ կ'ուզէին, չզիջանելով՝ որոշեցի գոնէ փորձ մ'ընել ճամբան շարունակելու։ Առտու

կանուխ էր, արեւը ճառագայթարձակ, օդը հողմա-
զուրկ. Ռահվայի անցքը չէի տեսած, բայց ինծի
այնպէս կ'երեւար թէ աւելի յարմարագոյն ժամա-
նակ մ'ընտրել չէի կրնար. ուստի ճամբայ ելայ:

Արեւմուտքէն արեւելք մինչեւ Վանայ լճին
մօտ ձգուող ուղին Նիմրութ լերան դիմացը կը շեղի
դէպ ի աջ եւ կը դառնայ դէպի հարաւ քանի մը
հարիւր մեդր բարձր լեռ մ'ելլելէն ետքը. հոս տեղ
կը սկսի Ռահվայի անցքը՝ նեղ դաշտիկ մը խորունկ
հեղեղատուած: Լճին վրայ թանձրակուռ մառա-
խուղ մըն է պատեր եւ վրան ծովացեր են վիթխարի
ամպեր: Բարձրութեանց ցրտահողմունք լերանց
ընդարձակ բացուածքէ մը կը դիմեն բռնութեամբ
դէպ ի լիճն՝ որուն բարեխառնութիւնն աւելի բարձր
է, եւ այսպէս սաստկաշունչ հողմայոյզք կը յառ-
նեն: Տեղ տեղ բուքէ մղուած ձիւնը յորձանա-
պտոյտ կը շրջանակի, ուրիշ տեղեր ծածկուած կ'ե-
րեւայ սպիտակ խաւերով վրայէ վրայ՝ տանեաց
կղմինտրներու նման. Քանի մ'ուղեւորաց մեզմէ յա-
ռաջ բացած նրբուղւոյն հետեւելով կ'երթանք.
ամէն վայրկեան սառած ձիւնը տեղի կու տայ մեր
ոտից տակ, ձիերն ու ձիաւորք մինչեւ կէսը կը խրին:
Մեծ ճգամբք կրկին կը գտնենք նրբուղին որ հարիւր
քայլ անդին դարձեալ անհետ կ'ըլլայ: Բեռնաբարձ
գրաստներն վաստակաբեկ՝ կ'իյնան շատ անգամ.
պէտք է այժմ արձակել բեռները, ոտք հանել եւ
նորէն բեռնաւորել, եւ այս միջոցին մինչեւ մէջք
ձեան մէջ խրած կ'ըլլանք: Այս ամայութեան մէջ
երկար ժամանակէ լքեալ խան մը մի միայն ապաս-
տանարան է ուղեւորին որ բքի հանդիպած են յա-
նակնկալս. բայց հոգ տանող չկայ շէնքին, եւ իւր
կամարներն արդէն փլած են ըստ մասին: Այս մի-
ջոցին հով մը կ'ելլէ, բռնութեամբ կը մղէ ձեան
հատիկներն որ կայծանման կը շողշողին արեւադէմ
ժամանակ: Խիստ բուք մը կը զարնէ երեսին, ան-
դամները կ'ընդարմանան եւ մեր սատիկանք հոգերու

մէջ իրարու կը նայէին։ Թէեւ արդեամբք վտանգաւոր է այս անցքը, բայց այսօր վախ չկայ մեզի. օդը դեռ գեղեցիկ է։ Ճամբան աւելի սահուն լպրծուն կ'ըլլայ, եւ մարդիկ ու գրաստները շատ նեղութիւն կը կրեն քալելու եւ աւելի յաճախ կ'իյնան։ Անցնելով Բաղէշի-Ջրոյ վրայ ձգուած հաստատակառոյց ժայռակամրջէ որուն ժայռախարակներն տեղ տեղ 60 մեդր բարձր են, կը տեսնենք վերջապէս Բաղէշ քաղաքն ու իւր պարտէզները՝ խորունկ հովտին խորքը։ Այս տեսարանը վեհ ու շքեղ է։ Ժամէ մ'աւելի պէտք է տակաւին քաղաքին սիրտը հասնելու։ Սառնապատ ճամբան զառիթափի մը վրայէն կ'անցնի՝ ուր գրեթէ անկարելի է ինք զինք բռնել. եւ այնչափ աւելի դժուարաւ կ'իջնանք վար՝ որովհետեւ գիշերն հասեր էր մեր վրան։ Ա՛լ ժամանակ է տեղը հասնելու. մարդիկ պարտասած են, ձիերուն կարկամած սրունքները կթոտած կը դողդողան։ Ուղեգնացութիւնն երկար էր ու աշխատեցուցիչ։





## Ժ.

# ԲԱՂԷՇԷՆ ՍՂԵՐԴ

*Մուշ, 12 փետրուար 1891:*

Բաղէշ գալուս երկրորդ օրն իսկ այցելութեան գացի նահանգին ընդհանուր կուսակալին՝ Ռէյուֆ փաշային, որ բոլորովին ուղղամիտ մարդ մըն է, յատկութիւն մ'որ ցանցառ է հոս, եւ որ իւր վարչական ձիրից հետ պատճառ եղաւ իրեն այս դժուարին պաշտաման հասնելուն։ Սիրալիր յանդիմանութեամբ իմ խան իջեւանիլս դարովեց եւ ուզեց՝ որ ցորչափ Բաղէշ կենամ՝ իւր տունն ու

սեղանն իմս ըլլան։ Պէտք եղաւ որ իւր քով հիւր ըլլամ. բայց նաեւ անմիջապէս սկսայ պատրաստուիլ Վան երթալու։ Սակայն յորդահոս տեղացած ձիւնը ճամբան շատ դժուարցուցեր էր, որ շատ անգամ բեռնակիր գրաստուց համար անհնար իսկ կ'ըլլայ, եւ կրճանձուկքները ձիւնախիտ փակուելով ուղւոյն արգելք պիտի ըլլային շատ անգամ։ Ուստի ծրագիր կազմեցի լիճը հասնիլ եւ շոգենաւակով մը անցնիլ լճէն, երբ հեռագիր առի Տրվըլէ ընկերէս՝ որ կ'իմացընէր թէ ճամբայ ելած է ինծի հասնելու միանալու։

Հաճոյատեսիլ Բաղէշը չորս նեղ հովտաց կցման բերանը կանգնած է՝ Վանայ լճին հարաւ-արեւմտակողմը։ Ծառախմբոց մէջ, զառիթափ ու խորտաբորդ ժայռերու մէջ՝ որոնցմէ վար կը թափուին կ'իյնան յորդաձայն ու ջինջ ջրվէժներ, կը բարձրանան աստիճանօրէն իւր պարտէզներն ու դարատափներն՝ շուրջը պատող բարձր լերանց կողին վրայ։ Գլխաւոր հովտին խորքը կը հոսի Բաղէշի Ջուրը, խորափոս գոգացած ժայռերու մէջէն իւր հեղեղասաստ ջրերը տանելով կցելով Պոհտան-Սու գետին. քանի մը փայտեայ նեղակամուրջ անցարանք մէկ տնէ միւս տուն ձգուած, քանի մը քարակամուրջներ անկիւնակենդրոն կամարով՝ կը կապեն երկու ուղղաձիգ գետափուլերը, որոնց եզերքը մեծաւ մասամբ տնկուած են ուռենիք ու կաղամախիք։ Քաղքին այլեւայլ թաղերու վրայ կը բարձրանան սրածայր տանեօք լայնաշտարակ մինարէներ. եւ իւր կամ դժուարասեպ ժայռերու կատարները թառած եւ կամ ամենանեղ ժայռահերձ խորշերու մէջ ապաստանած տներով շատ նկարագեղ տեսիլ մը կ'առնու քաղաքը։ Չորեքկուսի տները սովորաբար ամրաշէն են տեսակ մը բաւական կակուղ թխաքարէ, որուն թերութիւնն է այն որ դիւրաւ ջուր կը ծծէ եւ խոնաւութիւն կը պահէ. տանց տանիքը տափակ է, ուր ամառ ատեն օրուան

մէկ մասն եւ ամբողջ գիշերը կ'անցընեն բնակիչք։ Ամէն դրան վրայ վարսուած է խոյի մեծ եղջիւր մը որմոյն մէջ՝ ըստ հնաւանդ սովորութեան Քրդաստանի։

Հին բերդապատ դղեկի մը դեռ եւս նշանաւոր փլատակքը կանգնած են քաղաքին կենդրոնն աւելի ցած տեղ մը՝ երկաթակճի (basalte) ուղղաձիգ որմերով յաղթամարմին զանգուածի մը վրայ, որուն որմոց կառչած կուռած են թփեր. վերջնոցս արմատները ժայռահերձ խոռոչածներու մէջ մտած սպրդած՝ աւելի ճեղքած ընդլայնած են այն փապարածքները։ Ըստ աւանդութեան՝ Աղեքսանդր շինած է այս թանձրապարիսպ ու բարձր աշտարակներով պատուած միջնաբերդը։ Սոյն աւանդութիւնն այս կողմերն շատ կը կրկնուի. ամէն դոյզն բերդ, ամէն շէնքին աւերակ Մակեդոնացի աշխարհակալին ժամանակէն կը դրուի։ Միջնաբերդին խարսխաժայռին վրայ հին արաբացի նշանագրով արձանագրութիւն մը կ'երեւայ դեռ չաւեղծուած, նաեւ ոչ օրինակուած. վասն զի անհնար է անոր հասնիլ առանց մեծածախ լաստակներ կառուցանելու։

Բաղէշ կամ Բէգլիս՝ ինչպէս Արաբները կ'անուանեն, յիշատակարան մը չունի՝ բաց ի քանի մը հին մզկիթներէն որոնց քանդակազարդ դրանց վրայ արձանագրութիւնք կան դրոշուած, եւ կրօնական մէկ դպրոցէ մ'ուր այժմ քանի մը մոլլաներ ապաստանած են։ Պաշտօնէից բնակած "պալատն" (գօնաղ) ինչպէս ամէն ուրեք ի Տաճկաստան՝ խեղճ շէնք մըն է։

Ամառուան քաղաք է Բաղէշ. շատ հիանալի տեղեր կան շրջակայքը եւ ձորին մէջ բազմաթիւ հանքաջրոյ աղբերակունք, որոնց այց կ'ելլեցուի։ Սակայն ձմեռ ժամանակ ձիւնը բանտարգել կ'ընէ՝ այսպէս ըսելու համար՝ բնակիչները, հաղորդակցութիւնք աւելի դժուարին կ'ըլլան, եւ երթեւեկք՝ մարդկան ու բեռանց՝ լոկ բալխրով կ'ըլլան, զոր մար-

դիկ կը ձգեն կը տանին: Շատ արժան է այս տեսակ տեղափոխութիւնը՝ տաս ժամ ճամբու համար իբր 5 ղուրուշ: Գործաւորաց օրավարձն 3 ղուրուշ է ի Բաղէշ, ուստի եւ հոս գործուած պակեղէնք ու քան-դակագործ արծաթեղէնք հազիւ թէ բուն մետաղին գնէն քիչ մ'աւելի գնով կը ծախուին:

Թէեւ Հայաբնակ աշխարհաց ու Փոքուն Ասիոյ հարաւային դաշտավայրաց մէջտեղ նստած է Բա-ղէշ, բայց նշանաւոր առեւտուր մը չունի. ճամբա-ներու դժուարութեան պատճառաւ դաշտավայրէն եկած կարաւանք Տիգրանակերտի ճամբան կ'ընտրեն նախամեծար: Արուեստները չեն զարգացած ամե-նեւին, որ են միայն արծաթագործութիւն եւ քանի մը սովորական ստայններ հիւսել ու ներկել: Նեղ ու աղտոտ շուկայք խուռն կենդանութիւն չունին մանաւանդ այս եղանակին որ վաճառքները շատ յապաղած կը հասնին: Բաղէշի գետը քաղքին կոյ-ափողն ըլլալով՝ շատ աղտեղի չէ քաղաքը. շները՝ Արեւելից այս փողոց-մաքրիչները սակաւաթիւ են Բաղէշի մէջ. վասն զի քիչ բան գերծ կը մնայ գայլոց որկրամոլ անյագութենէն որ ձմեռները մինչեւ իսկ քաղքին սիրտը կու գան գիշերանց:

Բաղէշի բնակիչք կը հաշուին իբր 30.000, որոնց 18.000 քուրդ ու 12.000 հայ. սակայն այս թուերը՝ ինչպէս նաեւ Արեւելից քաղաքաց բնակ-չաց նկատմամբ ըսուած ամէն թուանշանք՝ լոկ կար-ծիք են. վասն զի չէ առնուած նաեւ տնաթիւը, զոր միայն թոյլ կու տայ ընել Գուրանը: Շատ անգամ փորձած են ձեռնարկել մարդահամարի, բայց ի զուր. մահմետականք միշտ թշնամի եղած են ազգահա-մարի, եւ ցայսօր անհնար եղած է իրենց յամա-ռութիւնը բեկանել:

Հոս մահմետականք մոլեռանդն են, թէեւ ոչ այնչափ՝ որչափ ի Մուշ: Ոռնացող տէրվիշներու մենարան մը կայ հոս, որոնց նուիրական գործողու-թիւնքն են դաշնակաւոր եւ ըստ կարելւոյն երկա-

բառեւ աղաղակ արձակել խռպոտ եւ սուր ձայնով։ Քիչ մ'ետքը անհնարին մոլեգնութիւնն իւր կատարը կը հասնի. իրենց աչուըները կ'արիւնոտին, փրփուր կը թափի շրթունքներէն, եւ ոմանք կատաղի յիմար կ'ըլլան ճշմարտապէս եւ կը յարձակին մերձակայից վրայ։ Ասոնք ամէնքն ալ ողորմութեամբ եւ տրիւք կ'ապրին։

Սակայն Քրդաց մոլեռանդութիւնը այնչափ չէ որ Հայոց կրօնական պաշտամունքն արգիլէ, ուստի եւ տեսանք որ Յունուար 17ին՝ Ծննդեան խթման՝ թափօրաբար շրջեցան Հայք քաղքին փողոցները լուցեալ մոմեղէնօք՝ զոր եկեղեցիէն կ'առնուին, առանց մահմետականաց մտադրութիւնն իսկ գրգռելու։

Գիւղերու մէջ կրօնական անհանդուրժողութիւնն աւելի սակաւ է, եւ շատ տեղեր Հայք եւ Քուրդք կ'ապրին համամիտ համաչունչ։

Գործոց տեսակէտէ՝ ամենաշատ տարաձայնութիւնք նոյն իսկ Հայոց մէջ տեղի ունեցած են, գոնէ ըստ ցուցակի ատենագրութեանց Բաղէշի, ուր կը տեսնուի որ 125 դատավարութեանց 108 հատը Հայք վարած են Հայոց դէմ։ Սակայն տեղն է ըսելու՝ թէ վաճառականութիւնն ալ Հայոց ձեռքն է գլխաւորաբար, եւ թէ յիշեալ դատավարութեանց թուոյն մէջ Քրդաց հասուցած աւարառու հինավարութեանց եւ ոչ մէկ հատը յիշատակուած է։

Քանի մ'ամիս յառաջ իրաց դրութիւնը շատ ծանրանալու վտանգ կար։ Հայք ձանձրացած Քրդաց շատ մը գողութիւններէն եւ յարձակումներէն, չորս քուրդ էին սպաննած։ Հրաման մը — անյայտ թէ ուստի տրուած էր — լեռները թռաւ տարածուեցաւ, եւ Քրդերը գունդագունդ դաշտն իջած էին հայ գիւղերը կողոպտելու, զոր Սուլթանը իրենց շնորհած էր, կ'ըսէին, ի վրէժխնդրութիւն։ Հազիւ կրցաւ վարչութիւնը հասկցընել Քրդաց՝ թէ վեհ.

Սուլթանն այսպիսի հրաման տուած չէ, եւ հազիւ զանոնք եդ դարձընել կարողացաւ:

Բաց ի քանի մը բողոքական ընտանիքներէ՝ որ ամերիկեան քարոզչաց ձեռօք դարձած են, բազմաթիւ կրօնական աղանդներ կան այս կողմերը: Գըզըլ-պաշները սակաւաթիւ են այս տեղ, իրենց բուն կենդրոնն է Տէրսիմ՝ ուր է իրենց դենպետը: Ասոնց դաւանութիւնը սակաւածանօթ է. թէ՛ քրիստոնէական եւ թէ՛ նաեւ մահմետական պաշտամունք կը կատարեն միասին. կը պատուեն զԱլի չիկահեր, կը մկրտեն տղաքն ու կը թլփատեն, հաղորդութիւն ունին (°), կանայք անքող կը շրջին: Շատ անգամ Թերահ-Սուտերան կը կոչեն զիրենք, այսինքն՝ "կրակը մարող.„ իբր այն թէ գիշերային տօնակացուրդներ կը կատարեն, ուր կը տիրէ ծայրայեղ անառակութիւն: Սակայն Գըզըլպաշներու տրուած այս "կրակը մարող„ յորջորջումն արդարացի հիմ չունի, թէեւ չենք ուզեր պաշտպանել այս երկրաց ազգաբնակութիւնքն այն մեղադրանքներէն որ կ'ըլլան իրենց բարոյականութեան նկատմամբ, եւ այն՝ յաճախ իրաւամբք: Բազմաթիւ ցեղեր կան զուրկ որեւէ որոշ կրօնական պաշտամունքէ, ուստի մահմետական կ'անուանեն իրենք զիրենք: Բոլոր այս ազգաբնակութիւնք ոգէտ են խորապէս, եւ քիչ չեն լերանց մէջ այն գիւղերն՝ ուր Քուրդք կ'երթան եկեղեցի, կը թլփատեն, բայց նաեւ կը մկրտեն իրենց տղաքն ու քրիստոնէական անուններ կը դնեն: Ուրիշ տեղեր հակառակն ալ կը տեսնուի, որ Հայք ինքնակամ կ'երթան մուէզզիններու աղօթքը խնդրելու: Այս տեղեր Հայք եւ Քուրդք բազմակին են, եւ կանանց փոփոխութիւնը սովորական. միաբան կ'երթան ուխտի միեւնոյն գերեզմանաց, նոյն նուիրական աղբերաց, եւ նոյնօրինակ կը թողուն այն տեղերն ի նշան բարեպաշտութեան զգեստեղէնաց կտորներ. ամէնքն ալ ծանր հիւանդութեան ժամանակ մեծ հաւատք ունին

մոլլահի չանթը ջրոյ մէջ եռացընելով առնուած ըմպելույն (մոպուխին)։

Յունուար 23ին հասաւ ընկերս՝ Տըվըլէ. որչափ կ'երեւայ ճամբաներն անգնաց են բեռնաբարձ գրաստուց համար։ Թեհրան երթալու համար մեր նախագծած ուղեգիծն անհնար է գրեթէ. ուստի որոշեցինք աւելի հարաւ իջնալ, որպէս զի Պարսկաստան ուղեւորինք Մուսուլէն անցնելով։ Աւելի թեթեւնալու եւ զմեզ անձիւն երկիրներէն անջատող լեռները դիւրաւ անցնելու համար՝ միայն բացարձակ անհրաժեշտն առինք հետերնիս՝ հազիւ մէկ ձիոյ բեռ։

Ամսոյն 27ին ճամբայ ելանք, թէեւ թանձր ձիւն կը տեղար ծիւ ծիւ եւ հիւսիսային բուքն երեսնիս կը զարնէր ձիւնը։ Իջանք Բաղէշի-Ջրոյ նեղահովիտը. տեղ տեղ ձեան սպիտակութեան մէջ որոշ աչքի կը հանդիպին ժանկագոյն սեւ բծեր՝ երկաթախառն ակնաղբերաց նշան, եւ այլ տեղեր ծծմբախառն ջրածնի (hydrogène sulfuré) խիստ հոտը ծծմբուտ ջրերու տեղը կը ցուցընէ. քիչ մ'անդին աղկաղեան ակնաղբիւրք ալ կան՝ որոնց մին որմապատ աւազան մ'ունի՝ ուր կ'երթան լոգանալու։ Թէրքէնտ գիւղի մէջ լերանց կողամիջէն օձապտոյտ յառաջ տանող ճամբան կ'անցնի ժայռանցքէ մ'որ վհի մը վրայ դուրս ցցուած յաղթ ապառաժուտ զանգուածի մէջ ծակուած է։ Այս Տէլիքլի-թաշ (Ծակ-քար) անուն անցքը 5 մեդր բարձրութիւն ունի, եւ 4՝ լայնութիւն, եւ զոր՝ ըստ գիւղացւոց աւանդութեան՝ հզօր ըղձանուշ պարիկ (fée) մը յօրինած է գիւթութեամբ, իսկ ըստ այլոց՝ Շամիրամ։ Այս անցքն այժմ (ձմեռ ժամանակ) կէս մը փակուած է սառուցի յաղթ սիւներով՝ որ լուսոյ թափանցելովն կանաչ ու կապոյտ կ'երեւան գունագեղ։ Հովիտը կը նեղնայ շուտով, կաղնեշատ լեռները աւելի բարձրաբերձ կը սեպանան եւ աւելի վեհատեսիլ կ'ըլլան. իսկ խորքը Բաղէշի-Ջրոյ

ալիքներն՝ որ Պոհտանայ Ջրոյ օժանդակ գետն է, կ'ոստոստեն բազմախիտ խարակաց մէջ՝ ծածկելով զանոնք փրփրով: Ձիւնը կը դադրի տեղալէն, բայց գիշերն է վրայ կը հասնի. մթոյ մէջ կը կորսուի ճամբան որ 10—15 մեդր բարձր գետափնեայ փուլերուն ճիշդ եզերքէն կ'երթայ, ուստի կը ստիպուինք թողուլ ձիոց սանձն՝ որ վիզը կախ կ'երթան դանդաղաբար: Հեղեղը կ'անցնինք կամրջէ մ'որ երկու գերան է միայն՝ հորիզոնական դրիւք զետեղեալ քանի մը ոստերով ծածկուած: Միւս եզերքէն կը կը նշմարենք վերջապէս տկար ու դողդոջուն՝ բայց դեռ շատ հեռու՝ լոյս մը, որ խանէ մը կու գայ, այս ամայի հովտին մէջ կարաւանաց եւ ուղեւորաց մի միակ մենակաց ապաստարանէն: Ոստիկանաց խումբ մը դրուած է հոն ճամբուն ապահովութեան հսկելու, որ վերջերս քիչ մը վտանգուած է:

Երկրորդ առտու ժամը 7ին ձի հեծած ենք. երկինք գոց է, բայց օդը խաղաղ, եւ բարեխառնութիւնը մեղմ: Բաղէշի-Ջուրը հոս կը նետուի դահավէժ խոր կրճանցքի մը մէջ՝ հազիւ 15—20 մեդր լայն, եւ ճշդիւ այս կրճամուտին տեղը կը բարձրանայ տեսակ մը հին բերդ աւազակաց որջ մը, որուն աւերակաց մէջ այսօր իսկ կը բնակին: Թողուցինք հեղեղին գիծը, եւ լեռը կտրել սկսանք. որչափ կը բարձրանանք՝ այնչափ կը սաստկանայ հովը որ նախ անզգալի էր, եւ արդէն վարազացած կը փչէր փոթորկօրէն, երբ Քալէմս կիրճը հասանք՝ 1,450 մեդր բարձրութեան մէջ. մենք կը սառինք, եւ թանձրախիտ տեղալ սկսող նրբաձիւնը կ'այրէ երեսնիս ու կը կուրցնէ: Ճամբուն հետքը ծածկուած է, ձիերը չեն երթար յառաջ, ուստի պէտք է ձիւնը կոխկրտելով ճամբայ բանալ. ցուրտն անդամալոյծ կ'ընէ զմեզ, բուքը՝ հեղձամղձուկ. բայց եւ այնպէս արահետ մը կը բանանք եւ ձիերը կը սկսին քալել: Քանի քայլ անդին գրաստը կ'իյնայ ու կը խրի, պէտք է կանգ առնուլ. ցուրտն այնպէս սաս-

տիկ է, մատներնիս այնպէս ընդարմացած որ կէս ժամէն աւելի կը տեւէ ձին յարուցանելն ու բեռնաւորել: Կէսօրը ժամը կէսին լերանցահանգոյցը կտրել անցնելով՝ կը հասնինք ձեան սահմանը. սարերը ձիւնաթաղ են, բայց վարը հովիտները գունագեղ զարդարուած թուխ, կանաչ ու կարմիր: Բարեխառնութիւնը մեղմացած է, հովը կը ցածնու, եւ մենք թոքալիր կը ծծենք գարնանային օդը: Բայց մեր այս հաճոյքը կարճատեւ է. անցելոց կը կցին նորանոր դժուարութիւնք. կաւուտ ճամբան խոռոչաշատ եղած է ձիոց քայլերէն՝ որով կանոնաւոր կարգաւ ճշմարիտ ջրափոսեր են կազմուած՝ ուր բարձունքներէն իջած սառնաջուրը կը ժողվուի: Ուղին աւելի դժուարագնաց եղած է քան նոյն իսկ առտուանը՝ թանձր ու շաղախուն ցեխին պատճառաւ. Թշուառ գրաստը շատ անգամ կ'ընկղմի եւ վերջապէս նաեւ ցեխին մէջ կ'իյնայ գլխիվայր շրջելով բեռները: Պէտք է դարձեալ բեռնաւորել, որ այնչափ դիւրին ալ չէ, վասն զի արահետ-ուղին նեղ է եւ խորավիհ անդունդի մը բերանը, հողն ալ լպրծուն ոտքերնուս տակ: Ճամբայ կ'իյնանք վերջապէս. բայց երեք հարիւր մեդր անդին դարձեալ կ'իյնայ, դարձեալ պէտք կ'ըլլայ կանգ առնուլ ու բեռնաւորել. քիչ մ'անդին երրորդ անգամ կը կրկնուի անկումը. խեղճ ձին ալ չի կրնար յառաջ երթալ եւ ոստիկաններէն մին վիրաւորուած է: Բեռները ոստիկանին քով թողլով հոն, օգնութիւն փնտռելու կ'երթանք կ'երթանք Խաւեմիկ գիւղը, բայց այս հայ գիւղն ամայի է՝ հազիւ ութ օր յառաջ Քրդերէն այրուելով: Կը ստիպուինք երկու ժամ ալ անդին Ցաւան քուրդ 10 խրճթէ խեղճ գիւղակն երթալ. իսկ ժամն արդէն չորսին քառորդ կայ: Մեծաւ դժուարութեամբ կը համոզուին քանի մը հոգի օգնութեան երթալ թշուառ ոստիկանին որ մեր ցեխի մէջ թաթաւած բեռները պահպանելու մնացած էր: Ցարդապատ դժնդակ ոլջի մը մէջ կը տա-

րածուինք գետնախշտի, եւ կը սպասենք հոգերու մէջ մեր Քրդաց դարձին։ Շատ սպասելէն վերջը՝ առտու ժամն երեքին աղաղակները կը ծանուցանեն մեր բեռներու գալուստը։ Ոստիկանը փայտացած է ցրտահար, քուրդ մը ծանրապէս վիրաւորուած ծնկէն, ամէնքն ալ ցմէջք ցեխերու մէջ թաթխուած։

Երկրորդ օրը ճամբան՝ թէեւ ի հարկէ միշտ ցեխոտ՝ կ'անցնի ըստ մասին դաշտէ մը, ըստ մասին լերանց ու բլրոց մէջէն՝ գեղեցկատեսիլ դիմօք, կարծես գարնանային հաճոյական շրջագայութիւն մը կ'ընենք։ Չորս ժամ քալելէն ետքը՝ հեռուէն կը նշմարենք Սղերդ քաղաքն սպիտակ տներով ասորեստանեայ շինուածոց շատ նման, թիւրեալ ու թեքեալ մինարէներով, որանկիւն մեծամեծ գռներով, աստիճանաբար բարձրացող տամալեօք։ Արաբական քաղաք մըն է՝ հայաբնակ քաղաքներէն աւելի զուարթատեսիլ։ Հին Տիգրանակերտի տեղը, կ'ըսեն, շինուած է քաղաքը՝ դաշտի մը վերջին ծայրն որուն հողն այժմ արդէն արօրադիր եղած է։

Սղերդ իբր 15,000 բնակիչ ունի. թէեւ քրդաշատ երկրի մէջ, բայց քաղքին ու շրջակայ 7—8 գիւղերու լեզուն արաբերէն է։ Մեծակամար տները շինուած են geisով՝ տեսակ մը գաճէ՝ որ լաւ կազմուած չէ եւ խոնաւութիւն կը պահէ։ Քանի մ'օրուան մէջ տուն մը շինեն, որ ի հարկէ երկար ալ չի դիմանար։ Ձմեռը՝ թէեւ ձիւնաշատ է լերանց վրայ, մեղմ է դաշտին մէջ, բայց ամառն տօթագին է սաստիկ, այնպէս որ քաղքին ու գիւղերուն բնակչաց շատերը կը թողուն տեղն ու լեռները կ'երթան։ Գարունն կանխահաս է, եւ ձիւնը լերանց վրայ դեռ չհալած՝ ծլած ծաղկած կ'ըլլան դաշտի ծառերը։ Հողն այնչափ բերրի է տեղ տեղ՝ որ տարին երկու եւ նաեւ երեք անգամ հունձք կու տայ, եւ իր այլազան բերքերն շատ ընտիր են։ Կաղնեաց անտառները գխտոր կու տան որ կ'արտա-

ծուխ, տերեւները ճարակ են անասնոց, եւ խոզկաղինք կարօտութեան ժամանակ՝ կերակուր բնակչաց, որ նաեւ շատ աղքատաց օրըստօրէ պարէնն է։

Այս գաւառակին մէջ՝ ուր կը ծխեն դեռ քանի մը հրաբուխք, բազմաթիւ են ջերմուկք ու բովք։ Տեղական գլխաւոր արուեստանիւթք են թաղեայ գորգեր, բամբակեայ նիւթեր եւ այծեայ ձար, կանանց պակեր, խոբրք կամ հատիչ զէնքեր, ու դաշունի կազմածք։

Ազգաբնակութիւնը կարելի է երկու դաս բաժնել. մին՝ ազնուական որ Աշիր կը կոչուի, եւ միւսն՝ րայայ կոչուածը կամ հարկատուք։ Բոլոր գաւառակին մէջ իբր 30.000 հայ կայ՝ մեծաւ մասամբ վաճառական ու երկրագործ. կ՚ըսեն թէ տեղ տեղ գերի են իրենց քուրդ տերանց ձեռքն որ կը վաճառեն իսկ զանոնք՝ ինչպէս ի Սասուն։ Ասորեստանեայք եւ Յակոբիտք՝ զոր Մահմեդականք հոս Ֆէլլահ կ՚անուանեն, աւելի են քան 40.000, իսկ Եզիտներն որ Դիւապաշտ կը յորջորջուին, հազիւ 8.000 են։

Այս կողմանց արանց սովորական տարազն է՝ լայն տաբատ, երկայնաթեզան պատմուճան եւ շապիկ՝ որուն թեզանեաց ծայրն երկար կապեր կան զորոնք ուսին վրայ կը ձգեն հանգրիճելով. գլխադիրն է երկայն գլխարկ մը՝ ֆուլաղ անուն եւ կամ կոնաձեւ մը՝ ֆէ-լլահ։

Երկու օր կենալէն՝ետքը ճամբայ ինկանք Սըղերդէն դէպ ի հարաւ։ Սղերդէն քիչ մը հեռու սալայատակ ճամբայ մ՚անցանք, որ տեսակ մը ելանելիք կը կազմէ Պոհտան-Ջրոյ եզերաց վրայ. այս քրդական գետոյն գլխաւոր ակնաղբիւրն Հողեաց վանաց քովէն կը բղխէ, եւ որուն ջուրը նուիրական կը համարին Հայք։ Այս գետն է կանաչաջուրն Արեւելեան Տիգրիս. մեր նոյն գետն հասած տեղը 30—40 մեդր լայն է, եւ բարձրաժայռ գեղատեսիլ հովտի մը մէջէն կը հոսի։

Երկրորդ օրն Պոհտանայ եւ Տիգրիսի գետախառնուրդը՝ Թիլ գիւղին մօտ՝ կը տեսնենք առաջին անգամ կէլէկները, որ լաստ են գերաններէ շինուած որ իրարու հետ կապուած են, եւ զոր կը բառնան օդուռոյց եւ կպրած ոչխարենւոյ կամ այծենւոյ տիկեր: Այս լաստերը կը թողուն ջրոյ հոսանքին եւ միայն կ'ուղղեն ըստ կամի՝ ձողի մը կամ նաեւ կոշտ թեւճակաց ձեռօք: Լաստերը Մոսուլ ու Պաղտատ կ'երթան, ուր լաստապանք կը ծախեն փայտը, դատարկ տիկերը կը բառնան էշերու վրայ եւ ետ կը դառնան ցամաքէն: Ոչ միայն Հերոդոտոսի ծանօթ խօսքին մէջ կը գտնենք այս կէլէկներուն նկարագրութիւնն ճշգիւ այնպէս՝ ինչպէս որ այսօր կը տեսնենք, այլ նաեւ սոնց նկարը քանդակուած գտնուած է Նինուէի պալատին աւերակաց որմոց վրայ: Ասով կը ցուցուի նաեւ թէ ինչ դոյզն փոփոխութիւն կրած են ժամանակաւ սովորութիւնք ու բարք այս կողմանց, ուր երբեմն նահապետք անշուշտ այնպէս ապրած են՝ ինչպէս կ'ապրին այժմ արդի բնակիչք:[1]

ԳԷՈՐԳ ՓՈՍՈՆ:

---

[1] Այս տեղ կ'ընդհատենք ուղեւորաց նկարագրութիւնը, վասն զի մնացեալն՝ որ ամբողջին քառորդէն քիչ մ'աւելի է, հետաքրքրական չէ մեզի համար: Ուղեւորք այս մասին մէջ կը նկարագրեն իրենց ճամբան դէպ ի Ճէզիրէ ու Մոսուլ, եւ անկէ ի Թաւրիզ, Սինհա ու Թեհրան, որմէ ապա դարձած են Բէշտի ու Կասպից ծովու վրայով:

Ծն. Թրգմ.:

